**ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ**

# Օմիակոն

Նկարը՝ ՄԱՄԻԿՈՆ ԲԱԲԱՅԱՆԻ

Աշխարհի ցրտի բևեռը գտնվում է Ինդիգիրկա և Կոլիմա գետերի ակունքների մոտ, որտեղ Օմիակոն ավանն է: Այստեղ ջերմաչափը ցույց է տալիս մինուս յոթանասունմեկ աստիճան, ամենացուրտ տեղը հողագնդի վրա Օմիակոնն է: Այդպես էր և այն տարիներին, երբ երիտասարդ կալանավորը առաջին անգամ թթվածնի պակաս և շնչահեղձ լինելու սարսափ զգաց հազարավոր կիլոմետրեր հեռու իր տաք հայրենիքից և քիչ մնաց փայտանար: Այնպես եղավ,, որ նրան Հայաստանից տարան մինչև Կոլիմա գետի ափերը՝ աշխարհի ամենացուրտ տեղը, Օմիակոն, և նա ակամայից արդեն դառնում էր նրա մշտական բնակիչներից մեկը՝ մինչև իր կյանքի վերջը: Բայց այնպես փոխվեցին ժամանակները ու տարիները, որ նա մըշտական բնակության չմնաց Կոլիմայում և տասնյոթ տարի հետո վերադարձավ իր հարավային երկիրը, որտեղ ցրտեր անգամ չէին լինում: Եվ հիմա, անդրբևեռային երկրում մշտական բնակության դատապարտված ութանասունին մոտ բընակիչը ձեզ համար պատմում է իր արտասովոր պատմվածքները ու հուշերը:

— Այստեղի ցրտերից մարդիկ չէին մրսում այնպես, ինչպես մրսում-կծկվում էին մեզ մոտ հարավում և երկրի այլ մասերում: Այստեղ մարդիկ և կենդանիները ուղղակի սառչում էին:

Օմիակոն ավանը Մործոտ լեռան բարձրությունից նման էր մառախուղի մեջ ընկած մի լայնեզր կաթսայի կամ ձագարի, որ կարծես դրված է գետնին, մարդու ձեռքով, ինչ-որ նպատակի համար: Նույնիսկ այն օրերին, երբ շրջակա մամռաթմբերի վրա խաղում էին արևի ճառագայթները և մամուռը գորգի նման ձգվող իր գույներով հրապուրում, գայթակղեցնում էր կենդանական աշխարհն ու մարդկանց՝ պառկելու իր մահաբեր [illegible], մառախուղը չէր լուծվում, դուրս չէր գալիս իր կաթսայի հատակից: Այնտեղ դարանակալ սպասում էր սառնամանիքը՝ դանակի պես կտրելու կենդանիների վերջավորությունները, խցանելու շնչափողը: Խիստ ու դաժան էր սառնամանիքը, ոչինչ չէր խնայում, և ոչ ոք դրանից ազատվել չէր կարողանում, եթե չէր հասկանում բնության լեզուն: Այստեղ ապրում էին բնության մարդիկ, որոնք ծնվել և մեծացել էին ցրտի ու սառույցների միջև, գիտեին դրանց լեզուն և բնավորությունը:

— Գնում էինք մենք իրար հետևից, գլուխներս կախ, հանգիստ հեռացող ստվերների պես: Մեր հետևից շղարշի նման բարձրանում էր ձյան փոշին, վերջից եկողը շնչով նմանվում էր ճերմակ ջրաղացպանին՝ ալրապատ ու փոշոտ հոնքերով: Քայլում էինք լուռ, մտազբաղ և չգիտեինք, թե ինչ է սպասվում մեզ մի քանի քայլ անելուց հետո: Ծանր էր մեր քայլքը, ծանրացած էին մեր ոտքերը և ուսերը, մենք հետքեր չէինք թողնում ձյան վրա, ոտնահետքերի մեջ ջրի նման հոսում-լցվում էր սառցե ձյունը և անհետացնում դրանք: Օդում թռչուններ չկային, լուռ, հանդիսավոր համրություն էր մեր շուրջը, թվում էր, թե քայլում էինք լուսնի վրայով, անստվեր, անհորիզոն սառնության մեջ:

Մենք իրար չէինք ճանաչում, չէինք տեսել, դեռ իրար հետ չէինք խոսել՝ ինչո՞ւ և ո՞ւր էին տանում մեզ, ոչ ոք ոչինչ չէր հասկանում: Մեր առջևից գնում էր մի փոքրիկ, նիհար մարդ, գնում էր թեթև քայլով: Թեթև էին նաև նրա հագուստները, ոտքերի թաղիքները, ձեռնոցները ու սկյուռի մորթուց կարած գլխարկը: Շարժումները անկաշկանդ էին, երևի տրամադրությունը բարձր էր: Երբեմն շրջվում, նայում էր մեզ, և կարծես ժպիտ կար նրա դեմքին: Մենք հոգնում էինք, նա չէր հոգնում: Իմ առջևից ընթացող մարդը կանգ առավ, ես էլ կանգնեցի: Կանգնեց մարդկանցից կազմված մեր ողջ շարքը: Դիմացիս կանգնած մարդը գլուխը հանեց ուսերի միջից, վեր ցցեց, նայեց շուրջը, ձեռքը հանեց ձեռնոցից և արագությամբ բացեց օձիքը, փորձեց լիաթոք շունչ քաշել, բայց չկարողացավ: Նրա սառած աչքերը կարծեք սառույցի կտորներ լինեին, անկյանք ու անշարժ, նա փորձեց ձեռքերը մոտեցնել դեմքին՝ չկարողացավ; լարի նման ձգվեց, երկարեց, ուղղվեց ու տապալվեց գետնին: Մեզ հրամայեցին չկանգնել, առաջ գնալ: Մենք առաջվա նման գնացինք, բայց մեր քայլ-



քըն այլևս այն չէր՝ թույլ էր և անհաստատ:

Մեր շուրջը ամայի մի հարթավայր էր, մեր գլխներում՝ սառած մի ուղեղ, որ ոչինչ չէր հիշում, ոչինչ չէր մտաբերում և ոչինչ չէր հասկանում: Վերջապես, ինչ-որ տեղ նշմարվեց վրանի նման մի բան, և մեզ հրամայեցին կանգ առնել: Մենք այդպես էլ շարքով վրանի տակը մտանք: Այնտեղ, վրանի կենտրոնում մի փոքրիկ խարույկ էր վառվում: Կարծես տաքություն զգացինք և շնչեցինք: Հանեցինք մեր երեսակալները, ձեռնոցները և հազիվ ոտքի վրա մնալով փորձեցինք պառկել հատակին գցած մորթիների վրա:

— Կիպիտոկ,— շշնջաց օտարոտի մի ձայն և մեզ ինչ-որ բան տվեցին, մենք խմեցինք, մեր աչքերը, մեր ուղեղները և շնչառությունը բացվեցին, և մենք տեսանք, զգացինք, որ վրանի տակ էինք, որ մեր շուրջը մարդիկ կան՝ գունատ, հոգնած, բայց կենդանի մարդիկ: Մեզ ամեն մեկիս մեկական փոքրիկ մատնոցներով չիֆիր՝ թունդ թեյ տվեցին: Մենք դրանից կենդանացանք ու թարմացանք:

— Չիֆիր, չիֆիր,— կրկնում էր ինչ-որ մարդ և նայում մեր անգույն դեմքերին, դեռ սառած հայացքներին: Նա կարծես փրկություն էր ավետում մեզ, ուրախ էր, և ավելի ուշ մենք իմացանք, որ մեզ՝ տասը հոգուս անց էին կացրել Օմիակոնի միջով՝ փորձելու, իմանալու համար, թե այդ մոտ երկու ժամանոց անցումի ընթացքում ինչպիսին կլինի մարդկային կորուստների թիվը: Հիմա նրանք արդեն գիտեին, որ կորուստը մեծ չէր լինի, եթե այդ տեղով անցկացնեին նաև հազարավոր կալանավորների: Թե ինչպես անցան մեզանից հետո եկողները և ինչ կորուստ տվեցին՝ մեզ հայտնի չեղավ: Մենք, միայն մենք իմացանք, որ անցանք աշխարհի ամենացուրտ տեղով, աշխարհի ցրտի

քնեռով, անցանք ոտքով, և այն կոչվում էր Օմիսկոն: Անցման արդյունքները «գոհացուցիչ» էին, ընկել էր տասից միայն մեկը, ցրտահարվել էին տասից յոթը, երկու հոգի հազում էին: Նրանց ճակատագիրը պարզ կլիներ միայն գարնանը, հունիսի կեսերին. եթե հիվանդանոցային թոքերի բորբոքումով՝ նրանք էլ կմեռնեին, եթե չհիվանդանային՝ կենդանի կմնային: Միագամայն բարենպաստ այս փորձնական արդյունքներով հաջորդ օրերի ընթացքում տասը հազար հետիոտն կալանավորներ անցան Օմիսկոնի միջով: Երբ մենք հասանք Մալդյակ կոչվող հանքահորերը, մեզ համար նույնիսկ հաճելի թըվաց սառնամանիքի ուժը: Թվաց, թե Մալդյակում ևս կարելի է ապրել, սարսափելի ոչինչ չկա: Այդ նրանից էր այդպես թվում, որովհետև անցել էինք դժոխքի միջով՝ դժոխքի ծայրամասերը մեզ չէին վախեցնում. աչքը կորցնողն աչքացավից չի վախենա:

Մարդիկ լարի պես ձգվում, հևում, բաց բերաններով օդ էին որսում, աչքերի բիբերը դուրս էին ընկնում ակնախոռոչներից, կորցնում էին քայլելու, խոսելու, հասկանալու կարողությունները և կտրըված ծառի նման տապալվում գետնին. նրանց այլևս ոչինչ փրկել չէր կարող: Այսպես էին ցրտամահ լինում մարդիկ, այդպես էին սառչում նաև կենդանիները: Վազող նապաստակը հանկարծ սկսում էր կաղալ, ոտքերից մեկը ձգվում, փայտանում էր, փորձում էր նստել՝ չէր կարողանում, ոտքը խանգարում էր նրան, ցավում էր, և կարճ ժամանակից հետո սառչում, մեռնում էր: Մեզ տանում էին ինչ-որ գետի սառած հունով, տանում էին անշարժ մառախուղի միջով, կարծեք ավազներով ծակծկում էին մեր աչքերը, թոքերը, մեր կոկորդները, կրակի պես այրող ասեղներ, ծանրանում էին մեր ոտքերը, ուղեղը, խավարում էր մեր տեսողությունը, և մենք փորձում էինք բացել մեր պարանոցները՝ օդ շնչելու հույսով:

— «Ով ես, բարեկամս, ի՞նչ ազգից, որտեղի՞ց»,— հարցնում էր ինձ նիհար, փոքրամարմին մի բժիշկ: Շփում էր ոտքերս ու ձեռքերս, դեմքս: Ես միայն զըգում էի սպիրտի սուր հոտը և լսում բըժշկի ձայնը, որ երբեմն միայն երևում էր աչքիս՝ մերթ կիսամարմին, մերթ լրիվ մարմնով, մերթ սև, մերթ անգույն ճերմակ: Ցրտահարվածի տեսողություն: Ես ոչինչ իրական չէի տեսնում և ոչ էլ ամբողջական: Եվ, վերջապես, կարծես, ես ընկնում էի ինչ-որ խորը տեղ, և իմ ընկնելու ընթացքին վերջ չկար, անընդհատ ընկնում էի: Ինչ-որ տեղ անկումս դադարեց, և ես լսեցի մարդկային ձայներ.

— Վերջապես, արթնացավ:

— Իվան Իվանովիչ Կալինին,— ասաց բժիշկն ինձ,— իսկ ինչպե՞ս հորջորջենք ձեզ,

Ես ասացի:

— Գերմանացի՞ եք,— հարցրեց նա:

— Ոչ, հայ եմ,— ասացի,— բժիշկը, ինչպես երևում էր, փորձում էր իմ ազգությունը հասկանալ, բայց չէր կարողանում: Երբ նրան ասացին, թե ովքեր են հայերը, նա ավելի մոտեցավ ինձ, բացված ուսս ծածկեց վերմակիս փեշով և կամաց քայլերով հեռացավ:

Հիվանդանոցը, որտեղ պառկեցի երկար ժամանակ, կալանավորների համար էր, առանց որևէ հարմարության, դեղորայք չկար, նույնիսկ վիրակապեր չկային, բայց այն կոչվում էր հիվանդանոց: Իվան Իվանովիչ Կալինինը այդ հիվանդանոցի բժիշկներից էր, ինքն էլ մեզ նման կալանավոր: Շատ ցավալի է, որ չեմ մտաբերում, թե որտեղից էր ընկել Կոլիմա, հիմա ի՞նչ իմանամ, երևի ինչ-որ ժամանակ իմացել եմ, հիշում եմ մի բան միայն, որ նա ժանե շպրիցով դուրս էր քաշում իմ կողոսկրերի արանքներում կուտակված թարախը, որ ես ուրախությամբ էի սպասում իրեն և իր ժանե շպրիցի հայտնվելուն, որից հետո շնչում, թեթևանում և ուրախանում էի, որ դեռ կամ ու չեմ մեռել: Մառախուղներում ծվարած, ո՞վ գիտե աշխարհի ո՞ր մասում, այդ խեղճ կըրած, գերանակապ հիվանդանոց-տնակը մեր աշխարհն էր, մեր հույսն ու ապավենը: Ես մեռնողն էի, Իվան Իվանովիչ Կալինինն՝ իմ փրկարարը: Եթե նա հիմա կենդանի լինի, բավական է, որ նրա մոտ արտասանեք Մալդյակ անունը, նա կցնցվի, և նրա մարմնով սարսուռ կանցնի: Շատ կուզենայի, որ այդ բանը տեղի ունենար, և լսեր իմ անունը և մեր Մալդյակ կոչվող գերեզմանոցը մտաբերեր: Քանի՞ անքուն գիշերներ անցկացրեց Իվան Իվանովիչն մահճակալ կոչվող իմ ողորմելի տախտակամածի կողքին: Մենք բաժանվեցինք ընդմիշտ, մեր բախտը մեզ նորից կարո՞ղ է հանդիպեցնել. այդ ոչ ոք իմանալ չի կարող... Ո՞ւր է, որ իմացվեր մի կերպ, մենք հանդիպեինք:



ԱՔԻԼԵ ԿԱՄՊԱՆԻԼԵ

# Սոկրատեսը

(Երգիծանք)

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Թարգմանեց ՍՈՖԻ ԱՎԱԳՅԱՆԸ

Ի՞նչ սովորեց Սոփրոնիսկեսի որդին:

Պատասխանը պարզ է. ամեն ինչ:

Թվում էր՝ իմացության ոչ մի հատիկ չէր կարող վրիպել նրանից: Հետագայում պատմությունը հաստատեց այդ: Սոկրատեսը, ինչպես հայտնի է դպրոցական դասագրքերից, իսկապես եղել է մեծ իմաստուն: Նրան է պատկանում նշանավոր աֆորիզմը. «Ես գիտեմ միայն այն, որ ոչինչ չգիտեմ»: Նա այդ եզրակացությանն է հանգել երկարամյա համառ ուսումնառությունից հետո, երբ հաղթահարելով բոլոր գիտությունները, հասկացավ, որ մեր սակավազոր բանականությունը ենթակա չէ ոչ մի գիտության:

Սակայն այդ եզրակացությունը, որ ընդհանուր հաջողություն ունեցավ հետնորդների մեջ, ի հեճուկս նրա, ուղղակի հակառակ դեր կատարեց ժամանակակիցների համար:

Քննության օրն էր:

Սոկրատեսի հայրը, թեև վկա էր որդու արտակարգ ջանքերին, համենայն դեպս, վախենալով խստապահանջ պրոֆեսորներից, գերադասեց ազդեցիկ մարդկանց միջոցով բարեխոսել նրա համար:

—Դեհ, պատանի,— Սոկրատեսին դիմեց քննողը, սրտանց ցանկանալով օգնել դիմորդին,— շատ եմ լսել քո ջանասիրության մասին: Պատմիր տեսնենք ինչ գիտես:

Սոկրատեսը լռջացավ:

— Ես գիտեմ,— ասաց նա,— միայն մի բան...

— Քիչ է,— կոնչաց պրոֆեսորը մեթնելով և արտահայտիչ հայացք փոխանակեց քննական հանձնաժողովի անդամների հետ,— բայց մենք պատրաստ ենք լսելու քեզ:

— Ես գիտեմ,— շարունակեց Սոկրատեսը պայծառ հայացքով,— միայն մի բան, այն, որ ոչինչ չգիտեմ:

—Իբրև սկիզբ՝ վատ չէ,— սառնությամբ նկատեց ընթերականերից մեկը՝ նույնպես պրոֆեսոր:

— Շտապելու կարիք չկա,— հուշեց քննողը:— Պատասխանելուց առաջ լավ մտածիր: Այսպես, ուրեմն, ի՞նչ գիտես:

— Ոչ մի բան, պարոն պրոֆեսոր,— հարգալից համառությամբ կրկնեց Սոկրատեսը:— Հավատացնում եմ ձեզ: Ավելի ճիշտ՝ ես գիտեմ այն, որ ոչինչ չգիտեմ:

— Բայց գոնե մի բան պե՞տք է իմանաս:

— Ոչինչ: Բառացիորեն ոչինչ, բացի, բնականաբար, մի բանից:

— Ի՞նչ բան:

— Այն, որ ոչինչ չգիտեմ:

— Դա պատասխան չէ: Ի՞նչ է նշանակում «ոչինչ»: Դեհ, լարիր միտքդ:

— Կրկնում եմ, որ գիտեմ միայն մի բան:

— Դեհ, ասա:

— Ես գիտեմ, որ ոչինչ չգիտեմ:

Պրոֆեսորի համբերությունը սպառվեց:

— Եվ այդպիսի գիտելիքով,— որոտաց նա,— դու համարձակվում ես քննությա՞ն ներկայանալ: Ի՞նչ հանդգնություն: Դուրս կորիր:

— Բայց, պրոֆեսոր, եթե ես երկու անգամ նույնիսկ ավելի պարապեմ, իմ գիտելիքները միայն կպակասեն:

— Դո՛ւրս, դո՛ւրս, ասում եմ: Վա՜տ, շատ վատ է:

Հայրն իմանալով պատահածի մասին, մի լավ հասցնում է Սոկրատեսի վզակոթին:

— Անուղեղ դդում,— վիրավորում է որդուն,— ամբողջ փողս վատնեցի քո հիմար գրքերի ու տետրակների, քո ուսման վրա: Միայն ճրագի մեջ տասնհինգ տակառիկ ձեթ եմ լցրել: Եվ դատարկ տեղը: Ի՞նչ սովորեցիր, ի՞նչ:

— Ես սովորեցի,— պայծառացած պատասխանեց Սոկրատեսը,— այն, որ ոչինչ չգիտեմ:

—Սա դեռ ձեռ է առնում ինձ, ապիկա՛ր:

Մոտ վազեց մայրը:

— Դեհ, փոքրիկ Սոկրատես, դեհ, սիրելիս,— հորդորեց նա:— Դեհ, խելքդ գլուխդ հավաքիր: Մի քիչ սովորիր: Եվ հոկտեմբերին, այ կտեսնես, անպայման մի բան կիմանաս…

— Բայց ես արդեն սովորել եմ, մայրիկ,— պայծառամիտ հաստատակամությամբ իրենը պնդեց Սոկրատեսը:— Ազնիվ խոսք, ես արդեն ամեն ինչ գիտեմ:

— Եվ ի՞նչ գիտես:

— Այն, որ ոչինչ չգիտեմ:

— Թո՛ւհ, աստված վկա… ոչխարի նըման համառ ես: Գոնե մարդկանց մոտ ձայնդ կտրիր, ասա իբր մի քիչ աշխարհագրություն գիտես, մի քիչ պատմություն:

Սոկրատեսի քննությունից կտրվելու լուրը տարածվեց քաղաքով մեկ:

— Տեսեք, տեսեք,— ասում էին անցորդները, մատնացույց անելով նրան,— սա Սոկրատեսն է:

— Նա՞, որ ոչինչ չգիտի:

— Հենց նա: Այդքան տարի սովորեց, սովորեց ավանակը և ոչինչ չիմացավ:

— Իսկ ես լսել եմ,— կամացուկ առարկում էր մեկը,— թե մի բան գիտի:

— Իհարկե: Եվ պարծենում է՝ իբր գիտե մի բան, այն, որ ոչինչ չգիտե:

— Այո: Դեռ լկտի էլ է…

Իսկ մայրերը վախեցնում էին երեխաներին:

— Տես հա՛, լավ սովորիր, թե չէ՝ Սոկրատեսի օրը կընկնես:



ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

## Ձմռան ձորում

Խենթ հողմերն են ահեղ պարում,
Փոսին զարկում ձյունե վրան,
Գետն է սառել ձմռան ձորում,
Լռությունը թափել վրան:
Այնքան պաղ է գիշերը ջինջ՝
Պաղ սարսափ է բերում մարդկանց,
Մի քարափ է ճաքել ցրտից,
Ու կփլվի գարնանն հանկարծ:
Մի հուզում կա ծանր ու վարար,
Որ բերում է անդորրը մեծ…
Թվում է, թե աստղերն իրար
Զայն են տալիս անհունի մեջ:
Կյանքում տեսնես ի՞նչն է անմահ,
Իմ զարմանքն է անվերջ անում…
Այդ ինչո՞ւ է լուսնի վրա
Մեր հողարը հաճախ հաչում:
Այս ձմռան մեջ, անամպ դրսում
Մտորումն է փարվում հոգուս,
Հազար բան են սրտիս ասում
Մի կեռ լուսին, մի աստղալույս:
Իմ խոհերը չունեն և վերջ
Եվ սկիզբը չեմ հասկանում,
Տեսնես երկնի խորության մեջ
Չունի՞ մեկը ինձ պես անուն:
Ով դու զույգ, կապույտ անհուն,
Որ աչք ունես ու մթնաժամ,
Երկար, երկար միտք եմ անում
Ու դառնում եմ ես անվախճան:

## Մանկության կածան

Ինձ համակել է մի կորած հուզում,
Կարոտն է անցած իմ սիրտը նեղել,
Այդ կածանով եմ ձոր իջնել ուզում,
Դա իմ մանկության ճամփան է եղել,
Այդ կածանով եմ առաջին անգամ
Ջնծաղիկ բերել իմ ուսուցչուհուն,
Մի պարզ երազ էր միամիտ մանկան,
Մի կորած կարոտ, մի բերկրանք
անհուն:
Հետո դառնություն նստեց իմ ճամփին
Երբ որ պատանի դարձա մի ուժեղ,
Ծառ էի կտրում գետակի ափին
Եվ բերում ամեն կտոր ու տաշեղ,



Հենց այդ օրերում դարձա ես նոքար,
Ամեն օր տեսա տառապանք ու լաց,
Մի ցուրտ օր փայտի գնացի տկար,
Մի օր ցորենով՝ հեռու ջրաղաց,
Հետո իմ գործը դարձավ սովորույթ,
Ես զանգը դարձա մեր լուսաբացի,
Ուսից նստեցին գիշերները մութ,
Եվ մթնում՝ քարոտ ճամփա գնացի:
Ես իմ ողջ կյանքում տառապանք տարա,
Անվերջ տքնեցի մի մեղվի նման,
Եվ հիմա էլ մի լուռ, խոնարհ ծառա,
Իմ տքնությունը դեռ չունի սահման:
Երբեք մարդկանցից չեմ եղել խռով,
Եթեր առ եթեր իմ միտքն է սահում,
Այսպես գնում եմ իմ ճանապարհով
Դեպի հողը մայր ու դեպի անհուն:

## Մայրերն ու ճամփան

Այն խեղճ մայրերը վաղուց է չկան,
Որ միշտ կարոտի երգ էին ասում,
Բայց դեռ ճամփան է մեր սրտի նման
Գիշեր ու ցերեկ նրանց սպասում,
Ոչ ոք չի անցնում այս արահետով,
Այս բանուկ ճամփան դարձել է վայրի,
Բուրում է գարնան ուրցով ու պուտով,
Աշնանը տխրում մութով քարայրի:
Այս ճամփով անցան, որ չգան էլ տուն
Այն տղաները կռվի գնացող,
Այստեղ համբուրեց Սոնան իր որդուն,
Եվ այստեղ դարձան արցունքները ցող:
Նստել եմ մամռոտ քարափի գահին,
Կարծես իմ սրտին իջնում է պաղ ձյուն...
Այս կորած ճամփան մի հեքիաթ է հին,
Նա լուռ կդառնա ծանր մոռացում:
Իմ հոգին հիմա ողբ է շալակել,
Իմ էությունը դարձրել անքուն,
Եթե չլինեն իմաստուն գրքեր՝
Մարդիկ ոչ մի բան չեն հիշի կյանքում:
Ցավ չկա ուրիշ մոռացման նման,
Հենց դա է իրավ դառնությունը մեր,
Այդ ճամփան ինչո՞ւ չունի հուշարձան
Եվ վրան գրված անմահ անուններ,
Սա տրտունջ է մեծ ու մտքի կական,
Մեր ժամանակն է գուցե խելագար,
Գերեզման ունեն գողն ու սրիկան,
Անմեղ զոհվածը չունի հուշաքար:

# Ազնվություն

Կիրովականի Ստ. Զորյանի անվան դպրոցի աշակերտների շարադրություններից



Մարդուն բարոյական գնահատական տալու համար կարող է հիմք ծառայել անկեղծությունը: Մարդու մեջ բարոյա-էթիկական հատկանիշների առաջին հունդերը գցում են ծնողները: Եթե մարդը մեծանում է միմյանց հարգող և հավատարիմ հարազատների միջավայրում, նա ևս լինում է այդպիսին: Նրա համար խորթ է լինում կեղծավորությունը, չարիքը: Նա երևույթներին նայում է իր աչքերով, իր հոգու ազնիվ, բարի աչքերով, ու եթե նույնիսկ մեկն իր նկատմամբ չարությամբ տրամադրված լինի, նա այդ երկար ժամանակ չի նկատում կամ վերագրում է պատահականությանը, սխալմունքին: Մարդը պետք է լինի հոգով ամուր: Երբեք կամքից թույլ մարդը ազնիվ լինել չի կարող: Ազնիվ մարդիկ միայն նրանք են, ովքեր ունեն պատասխանատվության զգացում, եսամոլ չեն ու իրենց ընկերների թերությունները հասկանում են և ոչ թե գաղտնի ծաղրում: Պարտադիր չէ, որ ընկերները նույն ուղիով քայլեն, նույն հայացքներն ունենան, բայց որ ընկերության մեջ առաջին տեղը պետք է գրավի ազնվությունը, պարտադիր է:

Ի՞նչն է մարդուն ստիպում դառնալ անազնիվ և չար: Ինչո՞ւ մարդկային հոգին ծարավ է այդ «պաշտպանությանը»՝ անազնվությանը:

Մարդիկ, եկեք լինենք ազնիվ ու բարի, և չարին հանդիպենք միայն հեքիաթներում: Չէ՞ որ ազնվությունն ու բարությունը ամենագեղեցիկ հատկանիշներն են: Ուրեմն, լինենք գեղեցիկ:

**ԼՈՒՍԻՆԵ ՔԵՐՈԲՅԱՆ**
**9-րդ դաս.**

Ամեն քայլափոխի մենք հանդիպում ենք անազնվության դեպքերի, չնայած դպրոցում սովորեցնում են լինել ազնիվ ու բա-

րի:

Կան այնպիսի մարդիկ, որ ունեն հարմարավետ գեղեցիկ տներ, հագնվում են ընտիր, բայց զուրկ են մարդկային բարձր արժանիքներից, և ստիպված ես կասկածել, որ այդ ամենը ազնիվ ճանապարհով է ձեռք բերված: Շատ աշակերտներ դեռևս դպրոցում իրենց ուսանող են հայտարարում, հպարտանում, իսկ նույն ընտրանին նստած նրանց ընկերը իր բարձր գիտելիքներով չի ընդունվում:

Բժիշկները նույնպես վարվում են անազնիվ, ովքեր իրենց ծանոթ են կամ շատ են դրամ տալիս, նրանց էլ լավ են «նայում»:

Ես կուզենայի, որ աշխարհում վերջապես վերանար անազնվությունը, այդպես մեր ապրած կյանքը կլիներ արդարացի:

**ՆԱԶԵԼԻ ՍԻՄՈՆՅԱՆ**
**6-րդ դաս.**

«Ազնիվ լինելու համար հարկավոր է հոգու ազնվությանը միացնել լուսավորյալ խելքը: Նա, ում մեջ միավորված են բնության այդ տարբեր շնորհները, միշտ ղեկավարվում է հասարակական օգուտի կողմնացույցով»:

Կ. ՀԵԼՎԵՑԻՈՒՍ

Մենք հաճախ ենք կարդում, լսում և խոսում ազնվության մասին, այն փառաբանում և դասում մարդկային վեհ արժանիքների շարքը, բայց հաճախ ենք ինքներս մեզ հարցնում՝ ազնի՞վ ենք: Մեծերից մեկն ասել է՝ եթե մարդ ինքն իրեն շատ է անհանգստացնում այդ հարցով, ուրեմն ազնվության բավականին պաշար ունի: Բայց այսօր ազնիվ մարդկանց և ազնիվ արարքների ինչ-որ քիչ ենք հանդիպում: Ես ուզում եմ ազնվությունը համեմատել այն մոր հետ, որն իր զավակներին՝ ազնվության պտուղները, անշահախնդրորեն զոհում է մարդ արարածի համար: Իսկ վերջինս հաճախ չի գնահատում այդ և իր արարքներով վիրավորում ու տառապանք է պատճառում այդ մորը: Մարդը տարեցտարի ավելի է ճանաչում ու հասկանում կյանքը, արդարություն է փնտրում այս մեծ աշխարհում, և չգտնելով՝ ինքն էլ է սկսում կորցնել ոչ այնքան «պետքական» թվացող ազնվությունը...

Ես արդեն տասնյոթ տարեկան եմ և արդեն տեսել ու զգացել եմ արդարության, ազնվության պակասից առաջացած արցունքներ ու հոգեկան ծանր ապրումներ և ամեն այդպիսի պահի ավելի եմ սիրում ու գնահատում դպրոցը, որտեղ, ինչպես շատերն են ասում, ավելի է պահպանվել մաքրությունը: Դպրոցից (կնշանակի ինչ-որ չափով ազնվությունից) բաժանվելու հեռանկարը սարսուռ է առաջացնում իմ հոգում: Ու ես տխրում եմ մեր ուսուցիչների համար, որ տարիներ շարունակ աճող սերնդին դաստիարակել են միայն լավի ու գեղեցիկի հեքիաթներով, տխրում եմ, որ չեն նախապատրաստում «դրսում» անազնվության հանդիպելիս հիասթափություն չապրելու համար, երբ հույսերով ու մեծ հավատով ուզում ենք ոտք դնել բուհ և դուռը «փակ» գտնում:

Ես նեղանում եմ մեծերից, երբ նրանք հուսահատ անկարողությամբ խորհուրդ են տալիս. «Ոտքդ վերմակիդ չափով մեկնիր, մեծ տեղերից մի բռնիր»: ԲՈՒՀ-ը դարձել է նյութապես ապահովվածի համար վաղուց նվաճված բարձունք: Այսօր զարմանալի բացառությամբ են պատմում իր խելքով ընդունված դիմորդի մասին: Ինչո՞ւ է աճող սերնդի հոգեբանության մեջ նյութապաշտությունը դառնում դիմագիծ: Չէ՞ որ ըստ մեր սովորածի նրանք այսօր չարենցյան «գանգրահեր տղաներ» պիտի լինեին, բայց, ցավոք անազնիվ մեծերի օրինակը զորեղ է: Ինչպե՞ս կարելի է մատղաշ շիվ տնկել և այն սնել պղտոր ջրով ու աղտոտված մթնոլորտով, ինչպիսի՞ պտուղ ու սերմ կտա այդ շիվը: Այդ շիվի նման է իմ սերունդը, և թող մեծերին չզարմացնեն մեր սերնդի անառողջ արարքներն ու մտածելակերպը: Մեզ բոլորը սովորեցնում են ապրել ազնվորեն, բայց բոլորը չէ, որ հետևում են իրենց իսկ խորհրդին: Եթե այսօր արդարադատությունն է թույլ տալիս անարդարություններ, խոսք կարո՞ղ է լինել այլ բնագավառներում տիրող բարձր մտածելակերպի ու բարձր հոգեբանության մասին:

Անազնիվ մարդ, անազնիվ արարք, անազնիվ միջոցներով ձեռք բերված...ինչո՞ւ է շատացել անազնիվը: Ես ուզում եմ հավատալ, որ ազնվությունը փնտրում է մարդկանց մոտ վերադառնալու իր կորցրած ճանապարհը, ես հավատում եմ այդ հրաշքին:

Վերադարձիր, ազնվություն, քանզի քո կարիքը շատերն են զգում:

**ԼԻԱՆՆԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
**10-րդ դաս.**



Ես վճռեցի ճկարել սիրով
Մեր լեռան լանջին
թիկնած ոռնենին
Ու կանաչ-կարմիր
նրա ճյուղերին՝
ճերմակ աղավնի:
Տաղկած ոռնենուս
Ես նվիրեցի
սեր, խաղաղություն,
ապրելու հույսեր:

## Ջրույց արևի հետ

Չարաճճի փոքրիկի պես
Կախվել եմ ուզում, արև,
Քո դեղին հյուսերից
Եվ ուզում եմ ասել քեզ՝ բա՛րև...

Ժպիտներ եմ ուզում հղել քեզ, արև,
Ու կրակոտ երգեր,
Որ միշտ ջերմ մնաս
Ու ջերմ պահես աշխարհն ու մեզ:

Մանուկներից բազում
Սերեր եմ հավաքել, արև,
Որ կամուրջ կառուցեմ
Քո և հողի միջև:

Համբուրել եմ ուզում, արև,
Քո աչքերը դեղին,
Քո համբույրը բուժիչ
Համարում եմ հրաշատես,
Արև իմ ջերմագին,
Արև ամենատես:

МЕРИ ՀԱԿՈԲՅԱՆ
Մեղրի, Ա. Աղեյանի անվ. դպրոց, 7-րդ դաս.

## Շիրիմի վրա

Աշնան երկնքից անձրև է թափվում,
Արցունք է դառնում շիրիմի վրա,
Աշնան թորշոմած տերևի նման
Մի կին է դողում շիրիմի վրա:

Եվ գուցե մի օր հայտնի կդառնա
Օդի մեջ պաղած այն երգը լուսե,
Եվ գուցե մի օր երգը դառնանա
Ուռենու ճյուղին՝ որպես հուշ ոսկե:

Զոհվել է զինվորն այս ուռենու տակ՝
Աչքերում մի բուռ պարզ, կապույտ երկինք,
Սիրտ կարոտն է թևածում մենակ
Դեպի վեր ու վեր՝ պարզ, կապույտ երկինք:

## Ծիծեռնակներին

Ես ցրիվ-ցրիվ ժամեր եմ փնտրում
Հեռուների մեջ որոնելու ձեզ,
Դուք հեռուների հուշն եք իմ հոգում՝
Հոգուս արծաթե բողբոջների մեջ:

Ես սպասում եմ, գիտեմ, որ կգաք,
Ու բողբոջներս կդառնան գարուն,
Գիտեմ, ինձ նաև, երազներ կտաք,
Երազ հեքիաթի երազն անանուն:

ՄԱՆԵ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ
Գուգարքի միջն. դպրոց, 9-րդ դաս.

## Հեքիաթ կախարդական նժույգի մասին

Լինում է, չի լինում՝ ծեր ամուսիններ են լինում: Նրանք որոշում են իրենց կյանքի աշունը անցկացնել բնության գրկում: Անտառի բացատում ծերունին փոքրիկ տնակ է պատրաստում, գեղեցիկ այգի է տնկում: Կինը զբաղվում է տնային գործերով, տնամերձ հողամասն է մշակում: Ծերունին ոչխարներ է արածեցնում:

Մի անգամ առավոտյան, երբ ծերունին ոչխարների հոտը տանելու էր արոտ, անտառի բացատում մի գեղեցիկ նժույգ է տեսնում: Շատ է ուրախանում, ինքն իրեն մտածում. «Կտանեմ տուն, ձմեռը կխնամեմ, ո՞վ գիտե, եկող տարի գուցե չկարողանամ ոտքով հսկել ոչխարներին: Այս նժույգին իմ ծերունական բախտն է ինձ ուղարկել: Մոտենում է նժույգին: Նժույգը չի փախչում, մարդկային ձայնով խոսում է.

— Բարև, հայրիկ, ես կկատարեմ քո բոլոր ցանկությունները՝ ինչ-որ կամենաս: Միայն խնդրում եմ հանես իմ սմբակի մեջ մտած մեխը:

Այս ասելով՝ նա ցույց է տալիս իր արյունաթաթախ ոտքը: Ծերունին հանում է սմբակի մեջ խրված մեխը, շորից կտրում մի կտոր, այրում, մոխիրով դադարեցնում ձիու ոտքից հոսող արյունը: Ձին հանգստանում է ցավե-

րից, շնորհակալություն հայտնում ծերունկին և կարծես ամպերի միջով՝ աներևութանում: Ծերունին չի հավատում աչքի տեսածին, բայց արյունոտ աքցանը և շորի կտրված մասը երազային վիճակից հանում են նրան: Երեկոյան, երբ վերադառնում է տուն, ամեն ինչ պատմում է կնոջը: Կինը լսելով այդ ամենը, ափսոսում է, որ ծերունին ձիուց չէր խնդրել գոնե մի քանի հատ չորացած ճյուղ ձմեռվա վառելիք: Այդպես, ափսոսանքով պառկում են քնելու: Առավոտյան ցախատան դուռը բացելով, տեսնում են դարսված-ջարդված չոր փայտ ու զարմանում: Այստեղ ծերունին հիշում է ձիուն, և կնոջ հետ միասին բարձրաձայն շնորհակալություն են հայտնում նրան: Անցնում է մի երկու ամիս: Ձյունով են պատվում անտառը և ծերունու տնակի չորս կողմը: Ձմեռն իր սառցե քուլաներով մշուշում է շրջապատը: Ծերունին հիվանդանում է, իսկ ծեր կնոջ համար դժվար էր հեռու աղբյուրից ջուր բերելը, և նա ինքն իրեն ասում է. «Ախ, երանի մի քիչ մոտ լիներ աղբյուրը»:

Բացում է դուռը, վերցնում է դույլերը, որ գնա ջրի, շատ է զարմանում. աղբյուրը դռան առաջ էր: Ծեր կինը ուրախ-ուրախ դույլերով ջուր է բերում տուն ու այս մասին պատմում ամուսնուն: Ամուսինը սիրով հիշում է ձիուն: Միայն նա կարող էր անել այդ հրաշքը:

— Ախ, երանի գոնե մեկ անգամ էլ հանդիպեի նրան: Իմ շնորհակալական խոսքը հայտնեի:

Այս բառերն ասելուն պես ներս է մտնում հրեղեն նժույգը, կանգնում նրանց դիմաց: Լսվում է մի խուլ որոտ, և նրանց առջև է կանգնում շիկահեր մազերով, կապույտ աչքերով, գեղեցիկ դեմքով մի բարձրահասակ պատանի: Պատանին ընկնում է ծերունու ոտքերը:

— Շնորհակալ եմ, հայրիկ, ձեր բարի կամքի և անշահախնդրության շնորհիվ ինձ վերադարձավ իմ մարդկային կերպարանքը: Ծերունին շատ է ուրախանում, բարձրացնելով նրան, համբուրում է ճակատը, և նստեցնում իր կողքին:



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

— Որդիս, մենք ենք քեզանից շնորհակալ, այն, ինչ արեցիր մեզ համար, վեր է ամենամոտ հարազատի արարքից: Ի՞նչ է պետք մարդուն այս բոլորից հետո: Մեծացել եմ, ձեռքերս չեն դիմանում ջրով լի դույլերին:

Տղան փաթաթվում է ծերերին ու այսպես խոսում.

— Հայրս մի մեծ թագավորություն ուներ. մենք բարի ու խաղաղ ապրում էինք մեր երկրում: Համոզված էինք, որ մարդկային բարությունը և անշահախնդրությունը վեր են ամեն ինչից: Այսպես խաղաղ ու երջանիկ ապրում էինք մեր ժողովրդի հետ: Ես 15 տարեկան էի, երբ հարևան կախարդական երկրից մեզ վրա հարձակվեց Յուսուփ չար կախարդը, ավերելով մեր երկիրը, սպանեց ծնողներիս: Նա չընցանկացավ սպանել ինձ և ասաց այսպես. «Եթե չլինեին իմ կախարդական հնարքները, քո հայրը գուցե հաղթեր ինձ: Բայց ես ինձ լավ հաղթող չեմ ճանաչի, մինչև չհաղթեմ հորդ և քո համոզմունքները»: Այսպես ասելով, նա ինձ կախարդեց՝ նժույգ դարձրեց: Եվ պատվիրեց այսպես.

«Եթե դու հանդիպես աշխարհում անշահախնդիր գոնե մի մարդու, այն ժամանակ կգա իմ մահը և քեզ կվերադառնա քո մարդկային տեսքը»: Ահա եկել է ժամը: Ես ձեր շնորհիվ հաղթեցի զորավոր Յուսուփ չար կախարդին: Այսօրվանից ես ձեր որդին եմ, դուք՝ իմ ծնողները: Թող միշտ աշխարհում տիրի ազնիվ անշահախնդրությունը:

Երկնքից ընկավ երեք խնձոր. մեկը՝ պատմողին, մեկը՝ լսողին, մեկն էլ ամենաազնիվ մարդուն:

**ԱՆՆԱ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**
**Կիրովական, № 5 դպրոց, 6-րդ դաս.**

# Թագավորի վարագույրը

(Եթովպական հեքիաթ)

Շատ տարիներ առաջ Եթովպիայում թագավորներին պաշտում էին համարյա աստծո չափ: Այդ պատճառով անգամ ազնվականի համար անվայել էր համարվում տեսնել, թե ինչպես է ուտում թագավորը: Թագավորական ճաշկերույթի դահլիճում ազնվականների համար երկար սեղան կար և ավելի փոքրը՝ արքայի համար: Երբ թագավորը նստում էր ճաշելու, երկու սեղանների արանքում սև վարագույր էր քաշվում, այնպես, որ պալատականներից ոչ ոք թագավորին ուտելիս չէր կարող տեսնել: Թագավորը կարող էր զրուցել իր հյուրերի հետ, նրանք նույնպես հնարավորություն ունեին խոսել արքայի հետ, սակայն մինչև ճաշի ավարտը չէին կարող տեսնել նրան:

Մի օր, ճաշկերույթից առաջ, արքունիքում հավաքված ազնվականները վիճում էին, թե ով կնստի այդ երեկո արքայի սեղանին ամենամոտը: Թագավորին մոտ նստելը համարվում էր մեծ պատիվ, քանի որ հնարավորություն էր ստեղծվում ճաշկերույթի ընթացքում խոսել նրա հետ, չնայած այն բանին, որ վարագույրը քաշված էր լինում: Ազնվականների միջև նման վեճերը տեղի էին ունենում յուրաքանչյուր խնջույքից առաջ: Իհարկե, վիճելը ավելորդ էր, քանի որ արքան միշտ ինքն էր վճռում, թե ով կնստի իրեն ամենամոտը:

Այդ օրը արքունիք էր եկել շատ հռչակավոր մի ուսուցիչ: Նա հայտնի էր ամբողջ երկրում իր խելքով և ուսմունքի խորությամբ: Հակառակ իր համբավի՝ նա շատ համեստ մարդ էր և ոչ մի առիթով չէր եղել թագավորանիստ քաղաքում: Մի հասարակ ուսուցչի տեսնելով արքունիքում, ազնվականները շատ զարմացան, ապա նրանցից մեկը ծաղրանքով դիմեց նրան.

— Դու եկել ես միանալու մեր ճաշկերույթի՞ն:

Մյուսները ծիծաղեցին, որ ինչ-որ մի ուսուցիչ, ինչքան էլ որ իմաստուն լինի, մասնակցելու է թագավորական ճաշկերույթին: Ուսուցիչը ժպտալով պատասխանեց.

— Ոչ, ես եկել եմ միայն ցույց տալու իմ խորին հարգանքը թագավորի հանդեպ և խոնարհվելու նրա առաջ, քանզի ես հավատացած եմ, որ նա ամենավեհ և գթասիրտ արքան է:

Պալատականներից ոմանք կարծում էին, որ թագավորը ժամանակ չի տրամադրի անգամ նրան տեսնելու համար: Բայց երբ արքան իմացավ, որ իմաստուն ուսուցիչը իր պալատում է, հրկույն կարգադրեց, որ ներս հրավիրեն: Ազնվականները դարձյալ վիճում էին, բոլորովին մոռանալով ուսուցչի մասին: Երբ այդ գիշեր պալատականները հավաքվեցին, շատ զարմացան, տեսնելով, որ թագավորը ուսուցչին հրավիրել էր մասնակցելու խնջույքին: Սակայն, երբ ազնվականները նստեցին իրենց երկար սեղանի մոտ, նրանց զարմանքը փոխարկվեց զայրույթի, որովհետև ուսուցիչը նրանց սեղանին չնստեց: Փոխարենը արքան բռնեց ուսուցչի ձեռքը և տարավ սև վարագույրի ետև, նստեցրեց արքայական սեղանի մոտ:

Մի հանդուգն ազնվական վեր կացավ իր տեղից և գանգատվեց.

— Օ, արքա, մեզանից և ոչ մեկին դու երբեք այդպիսի պատվի չես արժանացրել: Ինչո՞ւ ես այդպես պատվում աղքատ ուսուցչին:

Թագավորը դուրս եկավ վարագույրի ետևից: Բոլոր պալատականները ոտքի ելան:

— Ո՞վ է քեզ դարձրել իշխան,— հարցրեց նա գանգատվողին:

— Դու, իմ արքա,— պատասխանեց ազնվականը:— Դու ես տվել ինձ այդ տիտղոսը:

Արքան մոտեցույց արեց մի ուրիշ ազնվականի:

— Իսկ քեզ ո՞վ դարձրեց իշխան,— հարցրեց նա:

— Դու, իմ արքա:

— Իսկ քե՞զ,— արքան հարցրեց և ս

մեկին,— քեզ ո՞վ դարձրեց իշխան:

— Դու, ով իմ արքա:

— Ո՞վ է դարձրել վարագույրի ետևում նստած այս ուսուցչին այդքան իմաստուն:

Ազնվականները լուռ նայեցին իրար: Նրանցից և ոչ մեկը չկարողացավ պատասխանել այդ հարցին: Հետո թագավորն ասաց.

— Ես կարող եմ ազնվականական կոչումներ բաշխել: Փողոցի ցանկացած աղքատի ես կարող եմ արժանացնել տիտղոսի և դարձնել նրան հարուստ ու հզոր: Սակայն ստեղծել այնպիսի իմաստուն, ինչպիսին այս ուսուցիչն է, կարող է միայն աստված: Այդ իսկ պատճառով ես նրան տվեցի այս բացառիկ պատիվը:

Թագավորը վերադարձավ վարագույրի ետև, որտեղ նրան սպասում էր ուսուցիչը: Ազնվականները նստեցին իրենց տեղերը և լուռ շարունակեցին ճաշկերույթը՝ ամաչելով իրենց նախանձ արարքից:

Անգլերենից թարգմանեց
**ՇՈՒՇԱՆ ԱՎԱԳՅԱՆԸ**
Երևան, № 114 դպրոց, 5-րդ դաս.

## Պիտի երգեմ

Երգիր երգը սիրո ու պայքարի:
**Ե. ՉԱՐԵՆՑ**

Պիտի երգեմ, ու իմ երգի
Ամեն հանգի, վանկի խորքում
Պիտի ըմբոստ հոգիս հնչի:

Պիտի երգեմ, ու իմ երգի
Փոթորկահույզ ձայնը գերող
Պիտի ժայռեր, խութեր փշրի:

Պիտի երգեմ, դառնամ երգիչ տիեզերքի,
Ու աշխարհը սուտ-կեղծիքի
Ես իմ երգով սրբագործեմ:

Պիտի երգեմ ու երգելով
Ես մարդկային հոգիների
Ցնորքն անբիծ փառաբանեմ:

Պիտի երգեմ, ու բնության,
Տիեզերքի ռիթմն անեղծ
Խորախորհուրդ ես ընկալեմ:

Պիտի երգեմ, ու իմ երգը
Թող սեր դառնա մարդկանց համար,
Որ մեղեդուց չձանձրանան:

Պիտի երգեմ...
Ու մի օր էլ թե հանկարծ՝
Բանաստեղծ չեմ ծնվել բնավ,
Թող այդ դեպքում հույս մարի,
Իսկ ես լինեմ՝ հեռու, օտար...

**ԿԱՐԵՆ ՂԱԶԱՐՅԱՆ**
Նոյեմբերյանի շրջան, գ. Բերդավան,
9-րդ դաս.

## Գարուն

Գարունը եկավ, սառույցը հալվեց,
Լցվեց ժիր առուն:
Հավքերը եկան ծառին նստեցին,
Սիրուն երգ ասին:
Արևը ծագեց, հողից մի քնքուշ
Մանուշակ նայեց:

**ԼՈՒՍԻՆԵ ԲԱԼԱՅԱՆ**
Երևան, № 181 դպրոց, 8-րդ դաս.



**ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ**

## Ֆրիդրիխ Հյոլդերլին (1770~1838)

գերմանացի բանաստեղծ

### Առ հույս

О Հույս, սքանչելի, բարվո արարչագործ,
Որ չես լքում երբեք տունը սգացյալի,
Եվ հանց խոնարհ սպասարկու՝ տիրում ես դու, Ազնիվ,
Երկնի զորաց միջև ու մահկանացուների,

Ո՞ւր ես,— քիչ եմ ապրել, սակայն արդեն
Պաղ շնչում է իրիկունն իմ: Եվ էլ խաղաղ, ասես ստվեր,
Այստեղ եմ արդ, ու առանց երգ ահավասիկ
Սարսռացող սիրտս է ննջում կրծքիս ներքո:

Կանաչ հովիտներում, այնտեղ, ուր մով աղբյուրն է ամեն օր
Քչքչալով իջնում բարձունքներից, և բաղձալի
Անթառամն է աշնան օրվա մեջ բացվում ինձ,
Այնտեղ, Սքանչելի, լռության մեջ եմ կամենում

Որոնել քեզ, կամ երբ կեսգիշերին
Անտես կյանքն է պուրակի մեջ ծփում,
Եվ երբ իմ վերևում մշտազվարթ ծաղիկները՝
Փթթող աստղերն են շողշողում,—

О Եթերի Դուստր, հայտնվիր դու այդժամ
Քո Հոր պարտեզներից ու եթե չես կարող—
Որպես Երկրի Ոգի  չես կարող գալ, արդ երկնային
Անմեռ կյանքի երկյուղով դու սիրտս պատիր:

### Հայրենիքը

Զվարթ տուն է դառնում խաղաղ  օրերով նավազը
Հեռավոր կղզիներից, ուր որ վաստակել է.
Գոցե ես էլ դարձյալ հայրենիքն իմ դառնամ՝
Բայց ինչ եմ վաստակել, բացի տառապանքից:

Դուք, օ, ափեր զմայլելի, որ ինձ մեծացրիք,
Սիրո տառապանքը կմեղմե՞ք դուք, ախ, երբ ես գամ,
Դուք, մանկության հոծ անտառներ, ինձ  ետ կտա՞ք
Դուք անդորրը դարձյալ,  ետ կտա՞ք ինձ:

### Արևի աստծուն

Ո՞ւր ես. քո ողջ երանությունն է իմ հարբած հոգին
Լուսավորում. քանզի հենց նոր անցավ
Տեսիլքը իմ, թե ինչպես էր ցերեկային երթից

Հոգնած՝ աստվածային Տղան զմայլական

Փարթամ գանգուրները լվանում ոսկյա ամպերի մեջ,
Եվ իմ աչքը ինքնին այժմ նայում է դեռ նրա հետքից.
Սակայն հեռու է նա, հլու ազգերի մոտ,
Որոնք մեծարում են նրան աղոթքներով:

Սիրում եմ քեզ, Երկիր, դու սգում ես ինձ հետ,
Եվ մեր սուգը, ասես ցավը երեխայի,
Նիրհի է փոխարկվում, և ինչպես որ քամիներն են
Ծփում լարերի մեջ և շշնջում այնտեղ

Մինչև սքանչելի տոնը կորզեն
Մատները վարպետի, այդպես մեր շուրջ երազն ու մշուշն են
խաղում,
Մինչև սիրեցյալն է մեր ետ գալիս նորից
Եվ բորբոքում մեր մեջ Կյանքն ու Ոգին:

## Ներման աղերս

Սուրբ Ստեղծյալ, հաճախ փշրեցի ոսկյա
Քո անդորրն երկնային, և կյանքի խորունկ ու թաքուն
Ցավերը բացեցի բազում,
Ցավերը բացեցի ես քեզ:

Օ, մոռացիր այդ, ներիր. ամպերի հանգույն՝ այդտեղ
Խաղաղ լուսնի դեմքը ծածկող, ես կանցնեմ, և դու
Կհանդարտվես դարձյալ, գեղեցկությամբ քո
Կշողաս կրկին, դու, քաղցր Լույս:

## Մարդկային գոհունակություն

Ինչ սիրում եմ՝ սիրտն իմ սուրբ, լցված կյանքով՝
Գեղեցիկ,— դուք ինչո՞ւ էիք մեծարում ինձ,
Երբ ես հպարտ էի ու մոլեգին,
Երբ խոսում էի անվերջ, սակայն դատարկ:

Ախ, շատերին դուր է գալիս, ինչ շուկայում են սակարկում,
Եվ պատվում է ճորտը բռնավորին.
Աստվածայինին հավատում են նրանք միայն,
Ովքեր իրենք են այդ:

Թարգմանեց ՀԱԿՈԲ ՄՈՎՍԵՍԸ



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ԵՐԵՍՈՒՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# Մեծ Հայքի միավորումը Տրդատ Երրորդ Մեծի ժամանակ

Երբ Պարսկաստանում (Իրանում) Սասանյան Արտաշիրը անցավ իշխանության գլուխ, պարթև, հայ, քուշան և մյուս Արշակունիներին, Պարսկաստանի հարևան բոլոր երկրներին թվում էր, թե դա մի ժամանակավոր երևույթ է: Հայոց Տրդատ-Խոսրով Մեծի ղեկավարությամբ նրանք բոլորը իրենց զորաբանակներով մարտընչում էին ատելի Արտաշիրի ավելի փոքրաքանակ զորքերի դեմ: Հակասասանյան միությունը մի շարք փայլուն հաղթանակներ տարավ Արտաշիրի նկատմամբ: Թվում էր՝ հիմա-հիմա կպարտվեն Սասանյանները: Բայց՝ ապարդյուն: Սասանյանները մնացին Պարսկաստանի ղեկավար և շատ երկար ժամանակով: Պատմությունն ունի իր կանխագծված ընթացքը, որը փոխել զինվորական ուժով չի հաջողվում:

Տրդատ-Խոսրով Մեծի պարտությունից և Հայաստանը Հռոմի ու Պարսկաստանի կողմից երկու մասի բաժանվելուց հետո (253 թ.), հայերի համար գլխավոր խնդիր դարձավ երկրի միավորումը: Դրան կարող էր օգնել միայն Հռոմը: Բայց Հռոմի Վալերիանոս կայսրը 260 թ. պարսիկներից խայտառակ պարտություն կրեց ու գերի ընկավ նրանց ձեռքը: Պարսից Շապուհ I արքան իրեն բացարձակորեն անպարտ զգաց և որևէ մեկից այլևս վախ չուներ: Նրան դուր չէր գալիս իր օգնությամբ հայոց գահին բազմած Արտավազդ V-ի ինքնուրույն հայկական քաղաքականությունը: Բացի դրանից, Շապուհը որոշել էր ոչնչացնել բոլոր Արշակունիներին, նույնիսկ՝ իր կողմնակիցներին, որպեսզի աշխարհում պարսից գահի ոչ մի հակառակորդ չմնա: Եվ նա 261 թ. գահընկեց արեց Արտավազդ V-ին ու հայոց գահ բարձրացրեց իր որդուն՝ Սասանյան Որմիզդ-Արտաշիրին: Շապուհը ծրագրում էր հայ Արշակունիներին փոխարինել Սասանյան թագավորական տընով:

Իրանում Սասանյանների հաղթանակից հետո ուժեղացել էր զրադաշտական կրոնի ազդեցությունը: Արտաշիրն, ապա և Շապուհ I-ը զրադաշտականությունը հայտարարել էին պետական կրոն:

Զրադաշտը պարթև քարոզիչ էր: Նա ծնվել է մ. թ. ա. մոտ 630 թվականին, Միջին Ասիայում, ուր հնում իրանցիներ էին բնակվում: 30 տարեկանից քարոզել է իր ուսմունքը, որի գլխավոր գծերը հետևյալներն են: Աշխարհում երկու սկիզբ կա՝ բարի և չար: Բարին մեծ Աստված Ահուրամազդան է, չարը՝ Ահրիմանը: Ահուրամազդան արարչություն է գործում, Ահրիմանը՝ խանգարում է: Մարդը պետք է ընտրի կամ բարի, կամ չար սկիզբը: Բարին ընտրելով՝ նա պետք է նվիրվի Ահուրամազդային և իր մեջ զարգացնի բարի խոսք, բարի միտք և բարի գործ: Իսկ Ահրիմանը մարդու մեջ հրահրում է չար միտք, վրեժ, կեղծիք: Ահրիմանին օգնում են դևերը: Մարդու նպատակն է իր մեջ հաղթել Ահրիմանին, հետևել Ահուրամազդային: Զրադաշտի ուսմունքը գրված է ԱՎԵՍՏԱ գրքում: Զրադաշտականության այդ հիմնական սկզբունքներն

ուղեկցվում էին արևի, աստղերի և կրակի պաշտամունքով, զոհեր մատուցելով և այլն: Զրադաշտականները հատուկ կրակարաններ էին կառուցում, որոնք կոչվում էին ատրուշան: Դրանց մեջ պահվում էր անշեջ կրակ: Զրադաշտականությունը կամ մազդեզական կրոնը Իրանում տարածվել էր դեռևս մ. թ. ա. 6-րդ դարից սկսած, Աքեմենյանների ժամանակ: Հայաստան զրադաշտականությունը մասամբ էր թափանցել: Բուն հայոց հեթանոսական կրոնը թե՛ շատ հնում՝ Արարատի թագավորության ժամանակ, թե՛ Արտաշեսյանների ու Արշակունիների թագավորության շրջանում տարբեր էր զրադաշտականությունից:

Հայ հեթանոսության մեջ Հայկ աստծուն փոխարինեց Արամազդը: Ճիշտ չէ Արամազդին նույնացնել Ահուրամազդայի հետ: Թեև այդ անունները նման են, բայց, հավանաբար, տարբեր ծագում ունեն: Հայոց **Արամազդ** անունը պետք է ծագած լինի **այր** և **մազդ** (կամ **մաշտ**, **մաստ**) բառերից. առաջինը, որ ունի **ար** տարբերակը, ինչպես գիտենք, նշանակում է տղամարդ, արի, նաև՝ հայ, իսկ երկրորդը նշանակել է ամուր, հիմնավոր (հավանաբար **մաշտ** բառից է նաև Մաշտոց անունը):

Հայաստանում էլ են եղել ատրուշաններ: Սասանյանները նպատակ էին դրել ամբողջ հայ ժողովրդին դարձնել զրադաշտական, որը նրանց չհաջողվեց: Հայաստանում շարունակում էր ավելի ու ավելի տարածվել քրիստոնեությունը, իհարկե, դեռևս գաղտնի, բայց շուտով պետք է ընդունվեր բացահայտ:

270-ական թվականներին, երբ Հռոմի ներքին գործերը կանոնավորվել էին, հռոմեացիները հիշեցին իրենց դաշնակից Հայաստանի մասին: Իհարկե, հիշեցին իրենց շահերը նկատի ունենալով:

271—273 թվականներին Հռոմի կայսր Կալոս Ավրելիանոսը արշավեց դեպի Արևելք: Հռոմեացիները հայ զորքերի օգնությամբ Հայաստանից քշեցին պարսից սասանյան բանակը, և հայոց գահ բարձրացավ Տրդատ-Խոսրով Մեծի որդին՝ Խոսրով II-ը:

Հռոմեացիների և հայերի հաջողության պատճառներից մեկն էլ պարսից հզոր արքա Շապուհ I-ի մահն էր (272 թ.):

Խոսրով II-ը շարունակեց հոր քաղաքականությունը: Նա դաշնակցած հակասասանյան ուժերի՝ հռոմեացիների, վրացիների, աղվանական ցեղերի հետ՝ մինչև կյանքի վերջը (287 թ.) մոտ 14 տարի պայքարեց Սասանյանների դեմ: Նա մի շարք հաղթանակներ տարավ, բայց Սասանյանների գահը Պարսկաստանում դարձյալ մնաց աներեր, թեև ներքին գահակալական կռիվներ տեղի էին ունենում: Այդ կռիվների պատճառով էր, որ Սասանյանները միաժամանակ Հայաստանին նեղություն չէին տալիս:

Հռոմում կրթվում ու դաստիարակվում էր Խոսրով II-ի որդի Տրդատը: Նա պատրաստվում էր տիրանալու հայոց գահին: Տվյալներ կան, որ նախքան Հայաստան գալը Տրդատը Հռոմում ճանաչվել էր հայոց թագավոր:

Պարսից արքա Ներսեհը 297 թ. պատերազմ սկսեց Հռոմի և Հայաստանի դեմ: Այդ ժամանակ Հռոմի կայսրն էր Դիոկղետիանոսը, որը նշանակել էր երկու գահակիցներ: Արևելյան գործերը վարող գահակից կայսրն էր Գալերիոսը, որի զորքերը հայոց զորաբանակի հետ Հայաստանում ծանր պարտության մատնեցին պարսիկներին: Պարսկական զորաբանակները փախան Հայքից, մի մասը պարսից արքայի կանանոցի հետ գերի ընկավ հայերի ձեռքը: Այս պատերազմում հայկական զորքերը ղեկավարում էր Խոսրով II-ի որդի Տրդատը: Նրա օգնականներն էին հայ նախարարներ Անդովկ Սյունին, Արշավիր Կամսարականը և ուրիշներ:

298 թ. Մծբին քաղաքում Հռոմի և Պարսկաստանի միջև 40 տարվա խաղաղության պայմանագիր կնքվեց, որի կետերից մեկն էր Մեծ Հայքի քաղաքական միավորումը և անկախությունը՝ որպես Հռոմի բարեկամ պետության: Նույն թվականին Մեծ Հայքի թագավոր հռչակվեց Տրդատը: Սա Արշակունի երրորդ թագավորն էր Տրդատ անունով, այսինքն Տրդատ III-ը, որ հետո կոչվեց Տրդատ Մեծ:

Տրդատ թագավորի մասին պատմիչ Ագաթանգեղոսը գրել է այսպես. «Իրոք սեգ էր հանդերձանքով և մեծ ուժով, զորությամբ, ամուր ոսկորներով և հաղթ մարմնով, քաջ էր և կատաղի պատերազմող, բարձր հասակով»: Բացի հայերենից, Տրդատը տիրապետում էր նաև հունարեն ու լատիներեն լեզուներին:

Եվ այսպես, Հայաստանը նորից միավորված էր որպես անկախ պետություն Մեծ Հայքի ավանդական սահմաններում:

(շարունակելի)

# ՀԱՅԿԱ

**ՍԻԼՎԱ ՍՈՒՔԻԱՍՅԱՆ**

Ըստ հնագույն մատենագիրների և նորագույն պատմիչների, Հայկ Նահապետը Բելին հաղթելուց հետո կարգադրել է, որ հայերը իրենց անկախության տարեդարձը տոնեն ամեն տարի Նավասարդ ամսի 1-ին, որը համապատասխանում է հին տոմարով օգոստոսի 11-ին, այդ օրը տարեգլուխ՝ նոր տարի համարելով: Հնագույն ժամանակներում հայոց քրմական դասին մատչելի են եղել աստղագիտական բավական բարդ տոմարական (հունարեն «տոմարիոս» բառից. նշանակում է մատյան, որտեղ հիշատակվում էին տարվա ամիսները, օրերը) հաշվարկներ: Այդ է վկայում Հայկյան Մեծ թվականի կիրառումը հայոց իրականության մեջ: Այս թվակարգը գրվում և օգտագործվում է Մայր աթոռ Էջմիածնի ամենամյա օրացույցներում, տոմարական գրականության մեջ, մատենագիտական այլևայլ աշխատություններում, ինչպես նաև աշխարհի բոլոր անկյուններում հաստատված հայոց եկեղեցիներում, ուր առաքվում են ամենամյա օրացույցները ու տոնացույցները: Հին հայերի աստղագիտությամբ զբաղվելու ապացույցներից է այն փաստը, որ համաստեղություններից մեկը կրում է հայ դյուցազն Հայկի անունը: Հայերը տիրապետելով աստղագիտական հարուստ գիտելիքների, կարողացել են կազմել օգտագործման համար բավականին հարմար արեգակնային օրացույց, որը առավելություններ ունի լուսնային, լուսնա-արեգակնային և նույնիսկ այսօրվա հռոմեական արեգակնային օրացույցի նկատմամբ: Հայկական տարին արեգակնային էր, այսինքն՝ ուներ 364 օր, և բա-

# ՄԵԾ ԹՎԱԿԱՆ

ժանվում էր 12 հավասար ամիսների, որոնցից յուրաքանչյուրը բաղկացած էր 30 օրից, իսկ մնացած 5 օրը կազմում էր մի առանձին ամիս՝ 13-րդ, որը կոչվում էր Ավելյաց: Այդ անունները են՝ Նավասարդ, Հոռի, Սահմի, Տրե, Քաղոց, Արաց, Մեհեկան, Արեգ, Ահեկան, Մարերի, Մարգաց, Հրոտից, Ավելյաց:

Ամսվա յուրաքանչյուր օր առանձին անուն ուներ: Մաշտոցյան մատենադարանում պահպանվում են որոշ ձեռագրեր, որտեղ հիշատակվում են, որ հայկական ամսանունները կրում են Հայկ Նահապետի ուստրերի և դուստրերի անունները: Այդ օրերի անուններն են՝ Արեգ, Հրանդ, Արամ, Մարգար, Ահրանք, Մազդեղ, Աստղիկ, Միհր, Ջոպաբեր, Մուրց, Երեզկան, Անի, Պարխար, Վանատուր, Արամազդ, Մանի, Ասակ, Մասիս, Անահիտ, Արագած, Գրգուռ, Կարդվիք, Ծմակ, Լուսնակ, Ցրոն, Նպատ, Վահագն, Սիմ, Վարագ, Գիշերավար: Վաղ ժամանակներում հայերը օրը բաժանել են 12 ցերեկային և 12 գիշերային ժամերի: Դրանցից յուրաքանչյուրն ունեցել է իր հատուկ անունը: Ցերեկային ժամերն են՝ այգ, ծայգ, ծայրացյալ, ճառագայթյալ, շառավիղյալ, երկրատես, շանթակող, հրակաթ, հուրփայլյալ, թաղանթյալ, առաւոտ, արփող: Գիշերվա ժամերը կրում են հետևյալ անունները՝ խավարուկ, աղջամուղջ, մթացյալ, շաղավոտ, կամավոտ, բավական, հավաթափյալ, գեղակ, լուսաճեմ, առավոտ, լուսափայլ, փայլածու:

Հեթանոս հայերի վաղագույն ժամանակներում ունեցած աստղագիտական խորը ու բազմապիսի պատկերացումները արտացոլված են վերոհիշյալ արեգակնային օրացուցային համակարգում, որի խորունկ, մանրազնին և իրական [illegible] գիտական անուրանալի արժեք [illegible] վկայում է Հայկից մեզ ավանդ[illegible]րա-

դարձությունների հավասարի, հիմնավոր լինելը: Հայկյան Մեծ թվականը փաստորեն սկիզբն է Հայկի և Բելի հանրահայտ ճակատամարտի, որով սկսվում է Հայաստանի ինքնուրույն և ինքնիշխան գոյությունը: Հարցի մանրակրկիտ ուսումնասիրությամբ ժամանակին զբաղվել է Ղևոնդ Ալիշանը: Ալիշանը եզրակացնում է,որ եղել է ժամանակ, երբ թե՛ հաստատուն, և թե՛ շարժական տարիները սկսվել են միևնույն օրը: Երկու տարիների՝ շարժուն և հաստատուն, Նոր տարին, տարվա առաջին օրը եղել է օգոստոսի 11-ը (շարժական օրացույցի ժամանակ ամիսները թափառել են տարբեր եղանակներում, օրինակ՝ կարող էր քաղոցը ընկնել դեկտեմբերին):

352 թվականին տոմարագետ Անդրեաս Բյուզանդացին կազմել է եկեղեցական տոների 200-ամյա աղյուսակ: 552 թվականին Դվինի ժողովում որոշվում է այդ աղյուսակը վերջանալու պահից մտցնել տարեթվերի հաշվման նոր դարաշրջան՝ Հայոց Մեծ թվական: Այդ թվականին Նավասարդի առաջին օրը հուլիսի 11-ին էր: Իսկ սա նշանակում է «ճիշտ ամիս մը կամ 31 օր առաջ, քան զանշարժ տարին. ըսել է, որ 31 անգամ նահանջ չընելով՝ 4 տարին հեղ մը՝ այսպես առաջացեր էր քաղաքական տարին. այդ 4 անգամ 31 տարին կու գումարեն 124 տարի. ըսել է թե տումարին նորոգութենէն 124 տարի առաջ թե կրոնական և թե քաղաքական տարին նույն օգոստոսի 11-ին սկսած են. (վասն զի 552—124=428):

Ղևոնդ Ալիշանը կատարել է մի այսպիսի հաշվարկ: Հաշվումների համար նա հիմք է ընդունել 428 թվականը: Չորս տարին մեկ մի օրով տեղափոխվելով, 1460 տարի անց արևադարձային տարին վերականգնում էր իր դիրքը: Հայերն այդպիսի տարիներն անվանել են «նա-



հանջից-ճահանջ», իսկ 1461-ամյա պարբերաշրջանը՝ «Հայկական շրջան»: Նա 428-ից հանելով առաջին 1460 տարիները, ստացել է մ. թ. ա. 1032, ապա դրանից էլ հանելով երկրորդ՝ 1460 տարիները, հասել է մ. թ. ա. 2492 թվականը (1032+1460=2492): Այսպիսով Ալիշանը հետադարձ հաշվումներով ստացել է Հայոց Բուն Թվականը, երբ տեղի է ունեցել Հայկի կռիվը Բելի հետ: Այս թվականի մասին հիշատակություն ունի նաև Եվսերիոս Կեսարացին և Աֆրիկանոսն, որոնց հաշվումներով Բելի սպանությունը տեղի է ունեցել մ. թ. ա. 2492-ին:

Հայոց Մեծ թվականից 532-ամյա պարբերաշրջանն անցնելուց հետո 1084 թվականին (552+432) Հովհաննես Սարկավագ Իմաստասերը կազմել և մտցրել է տարիների հաշվման նոր դարաշրջան՝ Հայոց Փոքր Թվական:

1317 թվին Ադանայի 44-րդ եկեղեցական ժողովը որոշում է հրաժարվել հայկական տոմարից և ընդունել հուլյան օրացույցը: Սակայն այդ որոշումը չիրագործվեց: 1584-ին Հռոմի Գրիգորիս 3-րդ պապի կարգադրությամբ հայերեն է թարգմանվում գրիգորյան տոմարը, (հուլյան օրացույցն է՝ ուղղված վիճակում, Հուլիոս Կեսարի անունով) պարզաբանող աշխատություն: Բայց դա էլ արդյունք չի տալիս: Նոր օրացույցին անցնելու խանգարում էին գրիգորյանի նկատմամբ Հայկական օրացույցի առավելությունները՝ ամիսների հավասար տևողությունները, ամսանունների նպատակահարմարությունը և այլն: Հայաստանում գրիգորյան տոմարն ընդունվել է 1920 թվականից՝ սովետական կարգերի հաստատման պահից: Հայոց եկեղեցին պաշտոնապես ընդունել է 1923 թվին, սակայն այսօր էլ եկեղեցու և սփյուռքահայ որոշ հրատարակություններում գրիգորյանին զուգահեռ տրվում է նաև Հայոց Մեծ Թվականը:

Հռոմեական օրացույցի ընդունումը ինչպես մյուս երկրներում, այնպես էլ Հայաստանում տեղի է ունեցել ոչ թե այդ օրացույցի առավելությունների շնորհիվ (ընդհակառակը, հռոմեական օրացույցի պատմությանը հայտնի վատագույն օրացույցներից մեկն է), այլ այդ օրացույցի տարածված լինելու և միջազգային ժամանակի սերտ կապերի ու հարաբերությունների առկայության պատճառով:

## ԿԱՐՊԻՍ ԺԱՆԺԻԿՅԱՆ
## (1920—1946)

Կարպիս Ժանժիկյանը վախճանվեց, երբ ընդամենը 26 տարեկան էր: Նա նույնպես մեր շատ բանաստեղծների պես ունեցավ «ակնթարթի մը ճառագում»: Կարդալով բարեկամների ջանքերով տպագրված նրա «Օրե օր» առաջին և միակ ժողովածուն (Ստամբուլ, 1950 թ.) ափսոսանքի պահեր ես ապրում, հիանում նրա բանաստեղծական-մարդկային նկարագրով:

Կարպիս Ժանժիկյանի բանաստեղծություններն իրենց հուզաշերտերով այնքան կենդանի են, որ դժվարանում ես համակերպվել դրանց շուրջ կեսդարյա վաղեմության հետ: Ահա թե ոչն է իրական, հավերժ արդիական բանաստեղծության նախապայմաններից մեկը:

ԱՐԹՈՒՐ ԱՆԴՐԱՆԻԿՅԱՆ

### Սրճարանը բացօթյա հրապարակի վրա

աղջիկներ կը քալեն
տեսակ մը զղջումով
ձեռքերնին փեշերու վրա դրած
քովս պարապ
կաղ աթոռ մը կ'երերա
քանի մը կաթիլ արցունք
կ'իյնա աչքերես

տունն է մայրս
անիկա կը փչե աչքերուս մեջ
և կ'ըսե
«քամուն բերածը քամին կը տանի»

ես աչքերս կը բանամ
աղջիկները կը քալեն
տեսակ մը զղջումով
ձեռքերնին փեշերուն վրա դրած

քովս պարապ
կաղ աթոռ մը կ'երերա
կը թափին արցունքի կաթիլներ
աչքերես վար
չկարծեք որ կուլամ
աչքիս մեջ փոշի փախավ



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

## Դժոխքը մեր տունն է տղաս

դժոխքը կրակներու մեջ է կ՛ըսեն
մենք կրակը տաքանալու
կերակուր եփելու
և արդուկելու համար կը դնենք

կ՛ըսեն թե բոլոր մեղավորները
                    դժոխք պիտի երթան սուտ է
                        դրացի ընկերս Սարգիս
թռուցիկս պատռելեն ի վեր
բնավ մեր տունը չեկավ
դժոխքը վերն է կ՛ըսեն
                            սուտ է

երկնքի մեջ բան չկա
երբեմն արև և ամպ
և գիշերներն ալ երբեմն
լուսին և աստղեր կ՛երևան

սուտ են
ամենքն ալ սուտ կը խոսին
ես մինակ մամայիս խոսքին կը հավատամ
մամաս բնավ սուտ չխոսիր
և ամեն օր խոսք մը կ՛ընե
«Դժոխքը մեր տունն է տղաս»:

## Իրիկունը վերջին

Կ՛այրունի հեռուն
    ձանձրույթը լույսին
        Օրը կ՛այրունի:
Ծովը երկինք մըն է
    բաժակ մը ջուր է ծովը.
        ուր նոճիներ իրենց գագաթը կը լվան:
Արագիլ մը
    կը լիզե
        թևերն անհունին
                            բոցի մը հանգույն
Կը սուրա
    Օրվան չափ արագ
        օրվան սիրտը ծակելու
            ըմպելու
        մինչև վերջին կայլակը բոսոր:
Կ՛անցնիմ...
    վերջին մարդուն պես
        մարդուն պես վերջին
            վերջին ժամուն պես միակ:
Կը կրեմ ես
    իմ սրտի վրա
        թրթուռն հուսալքման
            որ կը կրծե անձայն...
Կը հատնի հոգիս
    կաթիլ մը դառնությամբ
        որպես իրիկուն մը վերջին:

## Մայրամուտ

Ցոլյաններու ետևեն
խենթացած խոլական կը վազեն
ծիրանի շողեր
...թևեր մայրամուտի
Ու բարձրաբերձ ժայռերու, բլուրներու
լուսառոոգ գագաթները կը կքին
մթնշաղին տակ հեքոտ:
Սրտերը առագաստ բացած
հորիզոնը կը ճեղքեն...
Ու իմ սիրտս
հոգնած երգի մը նման
...ու իմ սիրտս
հոգեվարք—
մեռած լճի մը հանգույն
ձայն կուտա, ալիք կուտա
լռության մը խորքերուն:




Հայոց հնագույն ձեռագրերում մենք հաճախ ենք հանդիպում «մեղվաջան աշխատությամբ» գնահատականին: Սա ամենաբարձրն է, որ ժամանակակիցները տվել են ձեռագիր գրքեր ստեղծողներին:

Մեղվաջան, այսինքն՝ մեղվի նման ջանասեր, մեղվի նման անտրտունջ, իր անելիքն անթերի իմացող, իր գործին անմնացորդ նվիրված մարդ: Ահա ինչու հնում հայոց լեզվում շատ են գործածվել «մեղվաջան գրիչ», «մեղվաջան ծաղկող» արտահայտությունները: Միջին դարերում տարածված են եղել նաև Մեղու, Մեղր, Մեղրիկ հատուկ անունները: Իսկ թե ինչ-

քան տեղանուններ կան, որոնց հիմքում ընկած է մեղր բառը, դժվար է հաշվել:

Մի փոքրիկ, ոսկեգույն միջատ, որի ստեղծած բարիքների քաղցրությունն ու բուժիչ հատկությունները նկատի ունենալով՝ մարդիկ մեծարել, բնության անփոխարինելի հարստությունների շարքն են դասել նրան:

Եվ հանկարծ՝ ճամփան մոլորած մեղուն պատուհանից թռչում է ներս, իսկ տնեցիներից մեկնումեկը, թըփ, խփում-սատկացնում է: Կամ էլ այգում, փողոցում չարաճճի մի մանուկ մեծերի աչքի առաջ ոտքը դնում է մեղվի վրա: Ավելի չար ու անմիտ արարք հնարավո՞ր է պատկերացնել: Չէ՞ որ հենց այդ պահին մեղուն իր փեթակն է տանում մի պուտ նեկտար, մի քանի հյուլե ծաղկափոշի, որն անհրաժեշտ է մեր բոլորին այնքան ցանկալի մեղրը ստեղծելու համար:

Ի պաշտպանություն մեղուների, իմ պատանի բարեկամներ, ես ձեզ կպատմեմ երեք դիպված, որոնց ականատես եմ եղել և չմոռանալու համար գրի առել իմ ծոցատետրում:

Երբևէ դու տեսե՞լ ես, թե ինչպես է մեղվի «ձագը» փախչում փեթակից: Դա արտասովոր մի տեսարան է: Սքանչելի այն պահը, երբ նոր մեղվաընտանիք է ծնվում:

Աշխատավոր մեղուներն այնքան են շատանում, որ փեթակը նեղվածք է դառնում, մեղուներն իրար խանգարում են: Ահա այդ ժամանակ մայր մեղուն, մի քանի հազար աշխատավոր մեղուների հետ գաղթում է հին փեթակից:

Ո՞ր պահին է հասունանում ընտանիքի ծնունդը: ա բնության անքնին խորհուրդն է: Փաստն այն է, որ մեղվաընտանիքը կիսվել է, մայր մեղվի հետ դուրս է թռել և պատրաստ է ինքնուրույն կյանքի: Իսկ հետո՞:

Իմ աչքի առաջ կարծես կախարդական մի ձեռք օդում պտտեցնում է սևացած, բզզացող մաքոքը՝ բաղկացած տասնյակ հազարավոր մեղուներից: Թվում է կենտրոնաձիգ մի ուժ չի թողնում, որ մեղուները ցիրուցան լինեն:

Մայր մեղուն է այդ ուժը, մեղվապարսի թագուհին:

Այդ պահին մեղվապարսի բզզոցն այնքան ուժեղ է լինում, որ խլացնում է մեղվանոցում տարածված դուրեկան, միալար երգը: Մեկ էլ հանկարծ այն ես տեսնում, որ պարսը խաղողի մեծ ողկույզի նման կախվեց մոտակա ծառի ճյուղից:

Այդ էլ է հրաշք. ինչպե՞ս են մեղուները կառչել իրար ու այդպես, ողկուզաձև կախվել: Դա իրենց իմանալու բանն է: Մեղվաբույծն էլ լավ գիտե իր անելիքը: Նա ծխարարը մոտեցնում է մեղուներին ու փչում: Ծուխը իրարանցում է գցում մեղուների մեջ, նրանք փոքրիկ ամպի նման պոկվում են ճյուղից, ու՝ քանի որ մեղվաբույծը մոտեցրել է ձագակալը՝ դռնակ ունեցող ծղոտե զամբյուղը, պարսը ներհոսում է այնտեղ: Մեղվաբույծը ըշտապում է փակել դռնակը: Դրանից հետո քիչ անելիք է մնում՝ ընտանիքը տեղափոխել նոր փեթակ:

Ահա այդպես, տասնյակ փեթակների կողքին, իմ աչքի առաջ, ավելացավ ևս մեկը, առողջ, աշխատավոր մեղուներով: Եվ ինչպես հին փեթակում, այստեղ ևս սկսվեց անդադրում աշխատանքը. թռիչք դեպի դաշտ, այգի՝ նեկտարի ու ծաղկափոշու հետևից: Եվ կաթիլ առ կաթիլ փեթակը ծանրանում է դեղին սաթափայլ ու ծաղկաբույր մեղրով:

Լինում են տարիներ, որ գարնանը անձրև քիչ է գալիս, ծաղիկը պակաս է լինում, և մեղուն դժվարությամբ է պաշար հավաքում:

Լինում են, սակայն, ծաղկառատ գարուններ, երբ եղանակը բարենպաստ է անձրևը չափավոր, ծաղիկը՝ շատ: Այ, հենց այդ ծաղկառատ տարիների մասին է, որ ժողովուրդն ասում է՝ մեղրի տարի:

1980 թվական, ապրիլ: Երևանի զբոսայգիներում խատուտիկն է ծաղկել: Դեղին արևիկներ՝ կանաչ մարգագետիններում: Այնքան շատ, այնքան շատ, որ կողմ նայես՝ խատուտիկի բույլեր են: Իսկ ինչքան շատ են մեղուները: Չէ՞ որ խատուտիկը վաղահաս մեղրատու բույսերից մեկն է: Դեռ չեն ծաղկել ամենամեղրատու ծառերն ու բույսերը՝ լորենին, ակացիան, խնձորենին ու բալենին: Չեն ծաղկել առվույտը, երեքնուկը, արևածաղիկը, և մեղուն նեկտարն ու ծաղկեփոշին առայժմ խատուտիկից է հավաքում:

Նստել եմ մի քարի ու դիտում եմ մեղուների աշխատանքը: Ինչ թեթև են թռչում ծաղկից ծաղիկ: Համարյա բոլոր մեղուների հետևի տոտիկներին նարնջագույն գնդիկներ են կպած: Մինչ կնճիթով նեկտարն է ծծում, տոտիկներով ծաղկեփոշի է հավաքում: Ինչպե՞ս, ի՞նչ հարմարանքով: Դու մի ասի, բնությունը հոգացել է

այդ մասին ևս: Մեղվի ոտքերն ունեն խոզանակիկ և զամբյուղիկ:
Եվ ամեն անգամ մի ծաղկից մյուսը թռչելիս նա իր զամբյուղիկում մի քանի հյուլե ավելի ծաղկափոշի է տանում:
Այս ինչքա՜ն են զբաղված մեղուները: Նույնիսկ չեն բզզում: Լարված աշխատա՞նքն է պատճառը, թե՞ արբել են խատուտիկի բույրից:
Մեղրի տարի: Առատ մեղրի: Ահա այս խատուտիկներից են սկսվում առատ մեղրի տարվա առաջին օրերը:
Իսկ ինչո՞ւ է այս գրույցը վերնագրված «Գարուն՝ առանց մեղու»: Հիմա կպատմենք նաև այդ մասին:
1982 թվական, ապրիլ: Երևանի օղակաձև զբոսայգի, Ծախմատի տան շուրջը ծաղկել են ծիրանի, բալի, տանձի ծառերը: Մոտիկից դիտում եմ նուրբ, սպիտակ ծաղիկներն ու գլխի չեմ ընկնում, թե ինչից է, որ ծառերը տխուր են:
Մեղու չկա, մեղու: Անցյալ տարի այս օրերին ծառերի վրա որքան ծաղիկ, այնքան էլ մեղու կար, իսկ հիմա...
Հիմա ծառերը մի տեսակ անորոշ ու սպասողական վիճակում են, կարծես թմրած լինեն:
Հայաստանում մեղուն կոտորվել է: Վարիտոզ դաժան տիզը ոչնչացրել է մեղվաընտանիքները: Փրկվել են հատուկենտ փեթակներ: Մեղվաբույծները խառնվել են իրար ու ելք են որոնում մեղուն իսպառ ոչնչանալուց փրկելու համար:
Տխուր է գարունը առանց մեղու: Երկար դիտելուց հետո ամբողջ այգում երեք մեղու տեսա: Մեկը՝ բալենու, երկուսը՝ ծիրանի վրա: Բզզոց չէր լսվում: Մի մեղվի բզզոցն ինչ է, որ մարդու ականջին հասնի: Մոլորված թռչում էին, ու շատ ցավալի էր: Առանց փոշոտման ի՞նչ պտուղ են տալու ծառերը:
Քանի-քանի վնասատուներ ունի մեղուն. մեղվակեր թռչունը, տիզը, ուժեղ քամին, հանկարծահաս ցուրտը, քիմիական գործարանները, թունաքիմիկատները, որոնցով սրսկում են ծառերը, բույսերի վնասատուների հետ կոտորվում են նաև մեղուները...
Այս բոլորից հետո արժե՞ ասել այն մասին, որ երեխաները պետք է մեղվի բարեկամները լինեն և ոչ թե թշնամիները: Չէ՞ որ ճնճղուկները, թեկուզ և թանկ գնով, բայց աշխատում են անարատ մեղր գնել հատկապես ձեզ համար, երեխաներ:

Մեծն Աչիոսակին զայրացել էր: Երկրի ազգային տոնին ինչ-որ մրցույթում հանդգնել էր դուրս չգալ շքերթի: Այդ ըմբոստությունը կարող էր վտանգավոր նախադեպ դառնալ:
Մեծն Աչիոսակին հրամայեց խռովարարին իր ոտքը բերել:
Մրցույթնն աշխատում էր հավատացնել, որ ինքը ոչ մի վատ դիտավորություն չի ունեցել, այլ, տարված առանձին հոգսերով, մոռացել է օրացույցի թերթիկը պոկել:
— Տարված ինչերո՞վ:
— Հոգսերով:



ԽԱՉԻԿ
ՀՐԱՉՅԱՆ

— Իսկ ի՞նչ ասել է հոգս:
— Դե, ո՞նց ասեմ: Հոգսը... հոգս է, էլի՜...
— Ախ, թշվառակա՜ն, թաքցնո՞ւմ ես: Ստուգել բառարանները:
Բառարանում գրված էր. «Հոգս-խընամք, հոգատարություն, որի հետ խառն է անհանգստություն, մտատանջություն: Ընդհանրապես՝ մտատանջություն, մըտմըտուք»:
— Ա՜-ա՜-ա՜,— զայրացավ Մեծն Աչիոսակին,— մտատանջություն, մտմըտուք... Իննսունինը տարի է՝ իմ երկիրը չգիտե՝ ինչ ասել է հոգս, մտատանջու-

թյուն: Այդ բառերը վաղուց ջնջվել են իմ ժողովրդի հիշողությունից: Եվ հիմա ինչոր չնչին միջատ փորձում է վերակենդանացնել տխուր անցյալը… Բա՛նտ նետել, մեկ տարի ու մի օր ժամանակով, որ խելքը տեղը գա:

Եվ որպեսզի մրջյունը սովից չմեռնի, հրամայեց ցորենի մի ամբողջ հատիկ տալ նրան: Մեծն Աջիոսակին գթառատ թագավոր էր:

Մեկ տարի ու մի օր, և մեկ հատիկ ցորեն:

Մրջյունը, թեկուզ և չարամիտ, բայց բավական խելոք էր: Նա միտք արավ. «Մեծն Աջիոսակին թագավոր է: Բոլոր թագավորները փոփոխամիտ են: Մեկ էլ տեսար՝ մեկ տարի ու մի օրը շինեց

— Հապա ինչո՞ւ չես կերել այդ կեսհատիկը:

— Պահել եմ նեղ օրվա համար:

— Այ կեցցե՛ս: Իսկ ինչո՞ւ ես կես հատիկը կախ տվել առաստաղից:

— Որ մկները չուտեն:

— Չէ, դու կարգին մրջյուն ես: Պետք է այս մասին զեկուցել Մեծն Աջիոսակիին:

Թագավորը գովեց մրջյունի արարքը ու հրամայեց… նորից փակել բանտում մեկ տարի ու մի օր ժամանակով և իր կես ցորենով:

— Սա հետաքրքիր երևույթ է,— ասաց:— Պետք է հետևել:

Անցավ մեկ տարի ու մի օր ևս: Մեծն Աջիոսակին հրամայեց մրջյունին իր մոտ բերել:




երկու տարի ու երկու օր: Այն ժամանակ ինչպե՞ս պիտի ապրեմ: Արի հատիկը կիսեմ, մի կեսն ուտեմ, մյուս կեսը պահեմ նեղ օրվան»:

Օրերը եկան-անցան, ու երբ ժամանակը լրացավ, բանտի դռները բացվեցին նրա առաջ: Բանտապետը ներս մտավ ու ինչ տեսնի. մրջյունը ննջում է նառին: Քաղցից սկսել է սպիտակել, փոքր բարակել, կպել է մեջքին, աչքերը դուրս են պրծել: Իսկ գլխավերևում, ո՜վ զարմանք, թելից կախ՝ օրորվում է ցորենի կես հատիկ:

— Դու, երևի քաղցած ես:

— Քաղցած եմ:

Մրջյունը բոլորովին ճերմակել էր, հազիվ էր ոտքերը շարժում: Հետն էր նաև ցորենի հատիկի քառորդ մասը:

Մեծն Աջիոսակին հրամայեց պարգևատրել մրջյունին ու մեծամեծ կոչումներ շնորհեց:

Ապա ազդարարեց երկրով մեկ.

— Պետք է իմ ամբողջ ժողովուրդը հետևի այս իմաստուն մրջյունի օրինակին:

Արդյունքը գերազանցեց բոլոր սպասելիքները:

Աջաստան երկրի ժողովուրդը օրնիբուն աշխատում էր միայն ու չէր ուտում:

Աջաստանը մեծապես ծաղկում էր:



# Տեքստիլի ՖԶՈՒ-Ն

(Ծիրազի մանկության տարիներից)

Լուսանկարը՝ ԱՐՄԵՆ ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆԻ

Մենք շատ ուրախացանք, երբ լսեցինք, որ Լենինականի տեքստիլի գործարանին կից բացվել է ՖԶՈՒ և սովորողները ստանում են թոշակ:

Այն միտքը, որ մեր ուժերով պետք է վաստակենք մեր օրվա հացը, մեզ մեծ բավականություն էր պատճառում, դրա համար էլ տարեսկզբին Օնիկի հետ փոխադրվեցինք ՖԶՈՒ:

ՖԶՈՒ-ում մեզ ռուսաց լեզու էր դասավանդում Արաքսյան, իսկ մինչ այդ ինչ-ինչ պատճառներով մենք այդ լեզուն չէինք սովորել, մեզ բոլորովին անծանոթ էին ռուսաց հնչյունները, դրա համար էլ խեղճ դասատուի հոգին դուրս էր գալիս մեզ հետ պարապելու ընթացքում:

Դաս պատասխանելու ժամանակ մենք այնպես էինք բղավում յուրաքանչյուր տառ, բառ արտասանելիս, որ դասատուն փակում էր ականջները:

— Օյ, բավական է, տեր աստված, դու խղճա իմ ականջներին,— ասում էր նա:— Իսկ մեր հնչյունների մեջ ոչ թե ռուսաց լեզվի դասատուն, այլ սատանան էլ ան-

զոր էր ձայնավորը բաղաձայնից ջոկել:
Ռուսաց լեզուն մեզ համար դարձել էր մի ծանր բեռ: Դասի ժամանակ մենք այնպես էինք տանջվում, քրտնում, որ ասես կիզիչ արևի տակ ծանր քարեր էինք բարձրացնում սարնիվեր:
Ինչ էլ անում էր այդ խեղճ կինը, որ մենք մի քիչ ռուսերեն սովորենք, ոչինչ չէր ստացվում: Նա ընկել էր մտածմունքների մեջ և կարծես ելքը գտավ:
Դասատու Արաքսյան պարտավորեցրեց մեր դասարանցի Սիմոնյան Նըվարդին ու մի տղայի, որ նրանք մեզ հետ լրացուցիչ պարապեն:
Նվարդը բացի ռուսերեն մաքուր խոսելուց (կարծեմ Ռուսաստանում էր ծընվել) շատ համակրելի, գեղեցիկ ու խելացի աղջիկ էր: Շիրազը խանդում էր ինձ, որ Նվարդն է ինձ բաժին ընկել, իսկ իրեն մի խելոք, համեստ տղա, բայց նա նրան «դանդալոշ» մականուն էր կպցրել:
Ես կաշվիցս դուրս էի գալիս, որպեսզի Նվարդը իմ պատճառով չամաչի, գլուխը չկախի, և դրա համար էլ քայլելուց թե նստելուց, պառկելուց թե քնելուց… նրա սովորեցրած ռուսերեն տառերը, բառերը միշտ աչքիս առաջն էին, ես աշխատում էի այդ բառերը այնպես արտասանել, ինչպես Նվարդի գեղեցիկ շրթունքներից էին հնչում: Ես տանջում էի ինձ, և դա նկատել էր Արաքսյան:
— Չէ երևի մի բան ստացվի,— մի օր ասաց նա:
— Ցանի բան, դասատուն վո՞վ է, որ չստացվի,— իսկույն բղավեց Օնիկը, այնուհետև մոտ քսանհինգ րոպե դունդուղալուց հետո վեր կեցավ նստած տեղից, ձեռքը վերև բարձրացրեց՝ իր վրա հրավիրեց դասարանի ուշադրությունը ու կարդաց.

Եթե ես էլ ունենայի
Նվարդի պես դասատու,
Մի՞թե այսպես կմնայի
Ռուսաց լեզվի խնդրատու:

Իր բախտից Ավոն գոհ է՝
Նվարդ ունի վարդի պես,
Իսկ Շիրազը բախտի զոհ է,
Կա՞ դարդ նրա դարդի պես:

Նվարդի պես մի վարդ էլ ինձ
Ընկեր Արաքսյան թե տար,
Նրա գլխի ոսկե թելից
Կհյուսեի ինձ քնար:

Ողջ դասարանը ու դասատուն հռհռում էին: Միայն ես ու Նվարդն էինք լուռ:
Արաքսյան ամեն օր պարտադիր մեզ դաս էր հարցնում, խորհուրդներ էր տալիս՝ սովորեք թեկուզ օրեկան մի բառ,— ասում էր նա, հետևում էր մեր վարքին, հետաքրքրվում էր մեր նյութականով:
— Էսօր դուք ի՞նչ եք կերել,— մի օր հարցրեց մեզ:
— Հեչ, ինչ կա, օր ինչ ուտենք,— անմիջապես ասաց Օնիկը:
Արաքսյան ոչ մի հարազատ չուներ: Նա հազիվ էր փախել թուրքական սպանդից, այժմ ապրում էր մենակ՝ տեքստիլի նորակառույց շենքերից մեկում և որպես քաղսովետի դեպուտատ ստանում էր օրական 500 գրամ հաց՝ 200 գրամի փոխարեն: Բայց այդ լրացուցիչ հացից ինքը համարյա չէր օգտվում: Շաբաթը երկու անգամ այդ հացը նախօրոք կտրատում, բաժին-բաժին էր անում, հետո թերթի մեջ փաթաթած հետը բերում էր դպրոց ու բաժանում մեզ:
Իսկ մենք առանց խղճի խայթ զգալու, հարձակվում էինք նրա տված հացի վրա ու անմիջապես ոչնչացնում, գիտենալով հանդերձ, որ ինքը սոված է:
Մենք զգում էինք այդ, ուզում էինք օգնել որևէ բանով այդ բարի, միայնակ ու անօգնական կնոջը, իսկ թե ինչով, ինչպես՝ չգիտեինք: Եվ վերջապես առիթն ինքը եկավ:
Արդեն ցուրտ էր Լենինականում, ձյունախառն անձրև էր գալիս, միանգամից եղանակը փոխվեց:
Առավոտյան դասարան մտավ ընկ. Արաքսյան ձեռքերը շփելով՝ օխ, ցուրտ է,— ասում է նա:
— Հընկեր Արաքսի, դու հլը վառելիք չե՞ս ստացել: Հեչ բանի մի խառնվի, մենակ վառելիքիդ տալոնը ու փողը տուր մեզի ու դու քաշվի մէ կողմ, մենք ինչ օր պետքն է, կենենք,— ասում էր Օնիկը:
Երբ տալոնները վերցրել էինք դասատուից, Օնիկը ասաց. «Տղեք, արեք էնպես էնենք, օր ինքը հեչ խաբար չեղնի»:
Երկաթգծի պահեստներից վառելիք ստանալը և տուն տեղափոխելը մեծ բարդությունների հետ էր կապված, մարդիկ ամիսներով տանջվում էին, իսկ մեր դասարանից մեկի եղբոր օգնությամբ, (որ աշխատում էր պահեստում), մենք մի քանի ժամվա ընթացքում ստացանք դասատուի ածուխը, փայտը ու տարանք տուն:

Արաքսյայենց տանը և նրա շրջապատում ոչ ոք չկար, ցախատան դռնից մի կողպեք էր կախ տված: Քաշեցինք՝ բացվեց, ածուխը տեղավորեցինք ցախատան մի անկյունում, փայտն էլ մոտ մի ամսվա համար ջարդեցինք ու շարեցինք ներսի պատի հետ, կողպեցինք ու գնացինք:

Հաջորդ օրը մենք սպասում էինք, որ մեր սիրելի դասատուն ուրախ-ուրախ կըմտնի դասարան ու կասի՝ շնորհակալ եմ, իսկ մենք կասենք՝ չարժի:

Բայց դասատուն ոչինչ չասաց, մյուս օրը՝ նույնպես: Անցել է երեք օր՝ էլի ոչինչ չի ասում, առաջվա նման դպրոց է գալիս կծկված, կապտած, մենք զարմացել էինք, բայց լռում էինք: Վերջապես Օնիկը չդիմացավ. «հընկեր Արաքսի հիմի փեչքը վառում ես, տունդ տա՞ք է»:

— Ոչ, դեռ ոչ, բայց ոչինչ, մի կերպ կհամբերեմ:

— Հըբը մեր բերած փետը, ածուխը չե՞ս վառե:

— Ի՞նչ, դուք էդքան շուտ ստացաք, ես էլ ենթադրում էի, որ մի ամսվա ընթացքում հազիվ թե գլուխ հանեք: Բա ո՞ւր է, ես չեմ տեսել:

— Ձեր ցախատունն ենք լցրել, փետն էլ կոտրտեցինք ու ջարդեցինք, լավ սուր սըղոց ունիս՝ հըը յոլա գնա, հետև կտեսնինք,— նորից է ասում Օնիկը:

— Վայ, խելառներ ջան, բալեք ջան, շնորհակալ եմ ձեզնից, ձեր բոլորից էլ շատ շնորհակալ եմ, այդ անելու հետ նա այնպես հուզվեց, որ լաց եղավ:

Այնուհետև լացն ու ծիծաղը խառնելով ասաց. «Ուրեմն դուք եք տարել հարևանիս ցախանոցը լցրել ու մեզ բոլորին խառնել իրար, մենք չենք իմանում, թե ումն է, իսկ հարևանուհիս մայրը առավոտյան, երբ բաց է արել ցախանոցի դուռը ու տեսել այդ բոլորը, ճչալով հետ է փախել՝ սա սատանայի գործ է, ասելով: Հիմա դա դարձել է ասելիք, հանելուկ մեր ամբողջ բակում»:

Մի քանի օր հետո ընկ. Արաքսյան բոլորին հրավիրեց իր տուն, բայց գնացել էին միայն չորս հոգի: Հաջորդ օրը Օնիկը ասում է. «Գիտե՞ս, երեկ մենք հընկեր Արաքսու տունը կուշտ ժարիտ էրած կարտոլ կերանք, վրեն էլ քաղցր չայ խըմեցինք: Ցանի դու ընչի՞ չեկար օր»:

ԱՎԵՏԻՔ ՄԿՐՏՉՅԱՆ
Պատերազմի և աշխատանքի վետերան

Այսպես անվանեցի գլուխն ու ինքս էլ հենց կասկածեցի իմ իրավացիությանը: Ինչո՞ւ: Դե, այն պատճառով, որ եթե հըրաշք է, ինչպե՞ս կարող եմ այն բացատրել: Ու, երևի թե, այսպես վարվեմ. ես պարզապես մատնացույց կանեմ այդ հրաշքը, քանզի հրաշքն անգամ հնարավոր է փախցնել աչքից:

Սակայն, նախևառաջ, ուշադրություն դարձրեք, վաղուց ի վեր թատրոնը կառուցվում է քաղաքի կենտրոնում: Երեկոները կրակներով ողողված գեղեցիկ շինություն: Իսկ ֆաբրիկաները, գործարանները, որպես օրենք, կառուցվում են արվարձաններում: Ու եթե մինչև անգամ թատրոնի շենքը կենտրոնում էլ չէ, բայց հրաշալի ներկայացում է բեմադրվել, մարդիկ նաև այնտեղ՝ արվարձան են մըղվում:

Անցած աշնանն ինձ բախտ վիճակվեց լինելու Հունաստանի Էպիդավրոս քաղաքի համաշխարհային ճանաչում ունեցող թատրոնում: Այդ թատրոնը **հինգ հազար.ից ավելի տարեկան է:** Նրա մասին շատ բան էի լսել ու վաղուց գիտեի, որ այնտեղ են առաջին անգամ բեմադրվել Էսքիլեսի, Սոփոկլեսի, Էվրիպիդեսի ողբերգությունները, Արիստոփանեսի կատակերգությունները: Բայց ընդամենը լսել էի: Մենք գալիս էինք Աթենքից, որը բավականին հեռու է Էպիդավրոսից, և նպատակակետին մոտենալու հետ սկսեցինք նկատել՝ ինչպես են երկրի տարբեր կողմերից ավտոմեքենաներ հոսում դեպի այն մայրուղին, որով մենք էինք շարժվում: Էպիդավրոս քաղաքը փռված է Էգեյան ծովի հենց ափին: Նրա հին հատվածը վաղուց ջրասույզ է եղել: Բայց մենք թեքվեցինք աջ, ու մեքենան շարժվեց դեպի լեռները: Ավելի ու ավելի էր մթնում, ու մենք լեռների արանքով բարձրանում, բարձրանում էինք վեր: Երկար գնացինք: Վերջապես տեսանք կանգատեղը, մեքենաների հսկայական քանակություն, կայանեցինք ու դիմեցինք դեպի թատրոն:

Ես, հենց որ այն տեսա, քար կտրեցի, շունչս բռնվեց: Ահռելի լեռնային թասի մեջ քարեղեն համաչափ կիսաշրջանով շարք-շարք փռված էին նստարանները՝ տասնվեց հազար տեղ: Լեռնային թասի մեջ տեղակայված, մերկ ժայռերով շրջափակված (միայն տեղ-տեղ նկատվում էր նոսր անտառը), հարավային աստղաշատ երկնքի տակ, հզոր լուսարձակներով շրջապատված այդ թատրոնն ինչ-որ ան-

# Թատրոնի հրաշքը

իրական բանի տպավորություն էր թողնում: Հույզերի ու խոհերի մրրիկը, հիացմունքն ու զարմանքը պատեցին ինձ: Ինչպիսի՞, ի՞նչ միջոցներով էին կարող հին հույները բարձրացնել այսպիսի սքանչելի-ահռելի կառույց և՝ ինչո՞ւ մարդկային կացարաններից այսքան հեռու: Ու ես պատկերացրի, թե ինչպես էին այն ժամանակ՝ հազարամյակներ առաջ, Հունաստանի ճանապարհներով, երկրի տարբեր ծայրերից, հետիոտն, հեծյալ ու սայլերով՝ մարդիկ շտապում Էպիդավրոսի թատերական ներկայացմանը: Գնում էին ժամեր, օրեր, գուցեև շաբաթներ շարունակ: Ու ի՞նչ, ո՞ւր էին նրանք գնում, ինչի՞ համար: Ըստ երևույթին ինչ-որ վեհ ու սրբազան, գուցեև ոչ պակաս նշանակալից բանի մոտ, քան Դելփի գուշակն է, որը նույնպես գտնվում է բարձրաբերձ լեռների մեջ, Հունաստանի մեկ այլ մասում:

Ի՞նչ զգացումներ էին ծնում հին թատերագիրների ողբերգությունները: Վախի և ցավակցության զգացումներ՝ ինչպես ասել է Արիստոտելը: Տրամադրում էին մարդուն հոգեկան այնպիսի ներդաշնակություն, որը կորցնելով, նա նաև իր մարդկային նկարագիրն էր կորցնում: Ուներ ոտքեր, ձեռքեր, աչքեր, լեզու, սակայն ինքն իրմով ներկայացնում էր ավելի շատ մարդանման կենդանի. ընդամենը այսքանը: Դուք հիմա էլ նկատում եք՝ ֆիզիկապես ներդաշնակ, գեղեցկադեմ մարդ, որ ներքուստ ամբողջապես փլուզվում է. նրա հետ գործ ունենալն անիմաստ է, նույնիսկ՝ վտանգավոր: Թատրոնը մաքրագործում, վեհացնում է մարդուն: Դա, թող ներվի այսքան առտնին համեմատությունը, բաղնիք է հոգու համար: Ինչպես մեր մարմինն է պահանջում զինքը մաքուր պահել, որպեսզի խուսափի հիվանդություններից, ազատ շնչի բոլոր ծակոտիներով, այդպես էլ մեր հոգին լվացման կարիք ունի: Թատրոնը մաքրագործում է: Եվ անում է դա ինչ-որ հրաշալի ձևով: Թվում է՝ գնում ես պարզապես հաճույք ստանալու: Երեկոն հաճելի անցկացնելու: Հենց այդպես էլ կա: Բայց դրա հետ մեկտեղ դու թոթափվում ես հոգևոր կեղտից, որ կուտակվել է առօրեականի հետ գործ ունենալիս, ու ներկայացումից ելնում ես մաքրված: Չգիտեմ՝ ուրիշներն ինչպե՞ս, բայց ես ներկայացումից ելնում եմ ոչ միայն հրճվալից, այլև ինձ ֆիզիկապես ավելի առողջ եմ զգում: Ինձ հետ նույնիսկ աներևակայելի դեպքեր են կատարվել: Բերեմ միայն մեկ օրինակ:

Երբ առաջին անգամ Մոսկվա ժամանեց հանրահռչակ «Լա Սկալա» թատրոնի թատերախումբը, ես տոմսակ ունեի Վերդիի «Ռեքվիեմի» համար, որը մեծ թատրոնում միայն մեկ անգամ էր ներկայացվելու: Մենակատարների մեջ էր նաև երգչուհի Լեոնտինա Փրայսը, որին ես միայն ձայնագրություններից գիտեի և շատ էի սիրում: Նրան ունկնդրելու բուռն ցանկություն ունեի, այդպիսի՛ եզակի հնարավորություն: Բայց, հակառակի պես հիվանդացա: Ջերմությունս բարձ-



**ԻՍԾՍՎ ԺՍՏԿՎԻ**

Հատվածներ «Ճամփորդություններ տարբեր ուղղություններով» գրքից

Ռուսերենից թարգմանեց
ՆԵՐՍԵՍ ԱԹԱԲԵԿՅԱՆԸ

րացավ, առավոտյան ջերմությունս երեսունինը աստիճանից ավելի էր: Կինս, ոչ առանց զգուշավորության, հարցրեց «Ի՞նչ որոշեցիր: Գնալո՞ւ ես»: Փոքր-ինչ տատանվելուց հետո, ես պատասխանեցի «Այո»:

Մարմնիս մեջ դողէրոցքի ու ջարդվածության գերտիրած զգացումով տեղավորվեցի բազկաթոռում: Լույսը մարեց: Մեծ թատրոնի փառահեղ դահլիճը սուզվեց մթության մեջ՝ կայծկլտալով առեղծվածային ոսկեզօծ զարդանախշերով: Բարձրացավ վարագույրը: Խմբավարը թափահարեց փայտիկը, ու... ես աշխարհում մնացա ամեն բան՝ մասնավորապես իմ ու իմ տկարությունը: Իսկ երբ հնչեց Փրայզի նրբանուրբ, խորունկ ձայնը, իմ հիվանդագին դողէրոցքը փոխարինվեց բոլորովին այլ դողի: Ես թատրոնից վերադարձա սովորական ջերմությամբ և այլևս չմտա անկողին ու դեղահաբեր կուլ չտվի: Ես առողջ էի:

... Մարդ հաճախ է ասում. «Տրամադրությունս ընկած է»: Այո, այո, հատկապես ընկած, ինչպես լարից ընկած է լինում երաժշտական գործիքը: Անհնար է նվագել՝ այն ականջ սղոցող ձայներ է արձակում և դրանով իսկ տանջում լսողներին: Այդպես էլ՝ մարդը: Երբ նա «լարից ընկած է», կարող է տանջել ուրիշներին, իսկ իրեն՝ անպայման: Այդպիսի մարդուն օգնելու համար անհրաժեշտ է սուզվել նրա հոգու մեջ և հասկանալ այն: Միանմանությամբ, հայտանիշերի (բոլորըն ունեն երկու ոտք, երկու ձեռք, մի քիթ, ձախից՝ սիրտ, աջից՝ լյարդ և այլն) նույնատիպությամբ հանդերձ, յուրաքանչյուր մարդ անհատական է: Ընդունին նըշեմ, որ համակողմանի զարգացած մարդու ձևավորման մասին խոսելիս, մենք բոլորովին էլ չենք ձգտում ստեղծել երեք ձեռնանի մարդ՝ թեկուզև աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու նպատակով, կամ էլ, ասենք, ծոծրակին անցնել էլի մեկ աչք, ինչը փողոցային երթևեկության արդի պայմաններում խիստ ցանկալի է: Անիմաստ զբաղմունք կլիներ դա: Եվ մենք գիտենք, որ մարդը, այն ժամանակից ի վեր, ինչ մարդ դարձավ, ֆիզիկապես կայուն է, անփոփոխ: Իսկ ինչո՞ւ չմտածենք և այն մասին, որ նրա ներքին զգացմունքային կերպարը նույնպես հավերժական է: Նրանում դարեր շարունակ նույն կրքերն են բորբոքվում, նա ապրում է միևնույն զգացումներով, ինչ և նախկինում: Նրա պատկերացումները աշխարհի երևույթների մասին կարող են փոփոխվել, բայց զգացումների շարակարգը... չեմ կարծում: Սեր ու խանդ, շռայլություն և ժլատություն, խիզախություն և թուլամորթություն, վախ և անվախություն, իշխանատենչություն ու համեստություն, դաժանություն ու գթասրտություն, ամբողջը, ամբողջը միահյուսված՝ կա յուրաքանչյուր մարդու մեջ: Տարբեր համամասնություններով, բայց կա:



Ի հաստատումն իմ այս մտքի՝ ուզում եմ վկայաբերել թեկուզև այն, որ հարյուր, երկուհարյուր, չորս հարյուր և նույնիսկ հազար տարի առաջ գրված պիեսներն այսօր էլ հուզում են մեր հոգիները: Մեզ հարազատ են այն հեռավոր մարդկանց զգացումները: Եվ իսկապես, Եվրի-

պիդեսի Մեդեան խանդի բռնկման պահին սպանում է իր զավակներին: Զարհուրելի է: Բայց մի՞թե այժմ, մեր ժամանակներում խանդի հողի վրա հանցագործություններ չեն կատարվում, այդ թվում՝ և սպանություններ: Ոչ հաճախ, իհարկե, բայց նմանատիպ ողբերգություններ լինում են նաև այժմ: Մեդեաները այն ժամանակ էլ ոչ սովորական երևույթներ էին: Շեքսպիրի Լեդի Մակբեթն իր ամուսնու մեջ փառասիրություն է արթնացնում, և սա սպանում է իր արքային, որպեսզի գրավի վերջինիս տեղը: Բայց փառասիրության զգացումն այսօր մի՞թե մարել է: Ազատություն տուր միայն: Ես նկատել եմ, որ երբեմն, նույնիսկ հրաշալի մարդիկ, հասնելով որոշակի պաշտոնի, դառնում են կոպիտ ու բռնակալ: Մի՞թե ներկայումս էլ քիչ են մարդիկ, որոնք կարիերա են անում ամենաանբարոյական եղանակներով: Եվ չե՞նք հանդիպի մեր ծանոթների մեջ պուշկինյան Սալյերիին, որին կրծում է նախանձը թեկուզև այն պատճառով, որ հարևանը «Ժիգուլի» ունի, իսկ ինքը՝ ոչ: Բանը զգացմունքի չափերի մեջ չէ, այլ նրա գոյության:

... Մեր աշխատանքի բարդությունը այն է, որ, ինչպես արդեն ասել եմ, միատիպությամբ հանդերձ՝ ամեն մի անհատ յուրօրինակ է: Հարկավոր է գրել, կարծես թե, բոլորի համար, բայց և միաժամանակ՝ ամեն մեկի: Այս պարադոքսն ի չիք է դառնում նրանով, որ բազում են հեղինակները, բայց յուրաքանչյուրն էլ յուրօրինակ է: Գոգոլը և Օստրովսկին, Մոլյերը և Շեքսպիրը, Չեխովն ու Գորկին, Բոմարշեն ու Գրիբոյեդովը: Եթե դուք ձեր փնտրածը մեկի մոտ չգտնեք, գուցե բախտ ունենաք գտնելու մյուսի մոտ: Այդ իսկ պատճառով պիտի լինեն և տարբեր հեղինակներ, և տարբեր ժանրեր, և տարբեր պիեսներ: Մեկը կարողանում է գրել մի բանի մասին, մյուսը՝ մեկ այլ բանի: Եվ ընդգրկման չափերն էլ տարբեր են: Կարող ես ունակությանդ չափով ընդգրկել տիեզերքը, բայց կարելի է նաև սևեռուն հայացքը կենտրոնացնել մեկ բջջի ուսումնասիրման վրա: Աշխարհը կարելի է ճանաչել թե՛ ամբողջության մեջ, թե՛ կոտորակված: Մարդուն հարկ է բացել կեցության բոլոր իրադրություններում: Հանդիսատեսն իրեն մտովի ցանկանում է տեսնել իր գոյության բոլոր բարդ պահերին:

... Պիեսը կարելի է ընթերցել: Բեմադրիչները կարող են տարբեր լինել, ինչպես բազմատեսակ կարող են լինել բեմի ձևավորումը, երաժշտությունը, զգեստները: Բայց մենք նրանց ստեղծագործությունն ընկալում ենք միայն դերասանի առկայությամբ ու նրա միջոցով: Իսկ դերասանի արտասանած խոսքը գլխավորն է: Ինչո՞ւ: Որովհետև, նրա հնչերանգի, շնչառության, ձայնային թրթիռի, ձայնի հնչման մեջ է հենց բովանդակվում ամենաթանկագինը՝ մարդկային ճշմարիտ զգացմունքը: Դերասանի արտասանած խոսքը, հնչերանգը հատկապես ամենից խորն են ազդում հանդիսատեսի վրա: Միևնույն պիեսը խաղում են տարաշնորհ դերասաններ, և դրանից նույն այդ պիեսը կարող է թողնել տարբեր տպավորություններ: Եթե, ասենք, Շեքսպիրի Համլետը կամ Հաուպտմանի Մաթիաս Կլաուզենը խաղում է սակավաշնորհ դերասան, ապա պիեսներն ինքնին թողնում են ոչ այնքան ուժգին տպավորություն:

Թատրոնի էությունը գլխավորապես դերասանի մեջ է ամփոփված: Դերասանի հետ՝ այն կյանք է, առանց նրա՝ տիկնիկների թատրոն: Այն պատճառով է թատրոնը ներազդման հզոր միջոց, որ ստեղծագործության առեղծվածային գործողությունը ընթանում է հանդիսատեսի աչքի առաջ: Մարմարով կերտված կերպարը, ինչպես և նկարչական կտավը, լույս տեսած գիրքը ստեղծագործական ակտի ընթացքի հետևանք են, իսկ թատրոնում՝ հանդիսատեսը ներկա է լինում հենց ընտեղծագործության ընթացքին: Գուցե հենց դա՞ է թատրոնի գլխավոր հրաշքը:



1983 թ. պատանիների առաջնությունում չորրորդ մրցանակային տեղ:

1986 թ. Տալլին, ՍՍՀՄ թիմային առաջնությունում աղջիկների թիմի կազմում դառնում է գավաթակիր:

Տաշքենդում անցկացվող ՍՍՀՄ սպարտակիադայի չեմպիոն՝ զուգախաղում, բրոնզե մեդալ՝ մենախաղում:

1988 թ. Տալլինի ավանդական միջազգային մրցումներ՝ երրորդ անգամ զուգախաղում գրավում է առաջին տեղը:

1988 թ. Մալայզիայի միջազգային մրցումներում գրավում է երրորդ մրցանակային տեղը՝ և՛ զուգախաղում, և՛ մենախաղում:

ԺԱՍՄԵՆԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ

# Հաղթանակը միակ պարգևը չէ

Խմբագրության մուտքի մոտ պայմանավորվել էի հանդիպել: Մտովի փորձում էի հիշել մեծ թենիսի տիտղոսավոր վարպետի դեմքը, կեցվածքը:

Մեզանում մի տեսակ արհամարհված և մոռացված այս մարզաձևը շատերի կողմից կարող է սիրելի դառնալ, զանգվածային բնույթ կրել: Չէ՞ որ մեծ թենիսը հոգեբանական, բարոյակամային փորձություններով և տեխնիկական հետաքրքրություններ ունեցող գրավիչ խաղ է:

Սովորաբար մարզական մեծ նվաճումների հասած մարզիկները անունով են ներկայանում, առավել ևս լրագրողներին: Բարձրահասակ, հաճելի արտաքինով, կապուտաչյա մարզուհին էլ ներկայացավ պարզ, սովորական ձևով՝ Աիդա: Այս անմիջականությունն էլ պատճառ դարձավ, որպեսզի մեր զրույցը լինի մտերմիկ: Ուրախալին այն է, որ այդ հնարավորությունը նա ընձեռեց: Հենց սկզբից Աիդան խուսափում էր թվարկել տասը տարիների ընթացքում համառ և քրտնաջան պարապմունքների շնորհիվ ձեռք բերած մրցանակները: Տասը տարեկան աղջնակը երազել է դառնալ քննիչ կամ դերասան: Իսկ նրա մուտքը մարզական աշխարհ բոլորովին պատահական է ստացվել: Կիլիկիա թաղամասում գտնվող նրանց տան մոտ բացվել էր մեծ թենիսի դպրոց: Մարզիչները մոտակա հանրակրթական դպրոցից երեխաներ էին հավաքագրել: Նրանց աչքից չի վրիպել ճըկուն, արագաշարժ չորրորդ դասարանցի Աիդան: Ծնողների համաձայնությունը ստանալով, մարզիչները նրան ընդունել են դպրոց և սկսել պարապմունքները: Այս պատահական դիպվածն էլ բախտորոշ էր դարձել Աիդայի կյանքում, թեև նա չէր էլ պատկերացնում, թե հենց այդպես է սկսվելու մարզուհու իր կենսագրությունը:

Երբ առաջին անգամ ձեռքն առավ ցանցկեն ռակետը, սկզբից հաճելի էր դեպի իր կողմը թռչող գնդակին հարվածելը, բայց մեկ, երկու, երեք՝ ռակետն աստիճանաբար ծանրացավ, ձեռքը դողդողաց, ոտքերն սկսեցին երերալ, իսկ մարզիչ Կյուրեղյանը պահանջում էր շարունակել: Այլևս անհնար էր դիմանալ, հուզմունքը պատել էր իրեն, և երեխա Ահդան սկսել էր հոնգուր-հոնգուր լաց լինել: Նա լաց էր լինում, իսկ մարզիչը գովում էր նրան, անընդհատ հուսադրում, կամային դասեր տալիս: Վերջապես մարզումները սկսեցին արդյունքներ տալ: Ամենակարևորն այն էր, որ Ահդան սիրեց այս խաղը: Ամենօրյա ճնշող ռեժիմից չէր տրտնջում, իսկ մարզիչները արդեն կանխատեսում էին Ահդայի մոտալուտ հաղթանակը: Եվ եկավ այդ օրը: Առաջին հաղթանակը երևանցի 6-րդ դասարանի աշակերտուհի Ահդա Խալաթյանը տարավ հայրենիքից հեռու Ավստրիայում. զուգախաղում և մենախաղում գրավեց առաջին տեղը: Երբ հաղթանակած դուրս էին եկել շրջելու, Ահդան փողոցի անկյունում նկատեց պաղպաղակի մի կրպակ: Հազիվ մի պաղպաղակ գնելու դրամ ուներ: Մարզիչին խնդրեց, որ գնի: Հուզվել էր, մանկությունն էր հիշել, աչքերը լցվել էին, կարոտել էր ծնողներին, տեսնես գիտեն, որ իրենց աղջիկը հաղթել է... Այնքան էր ուզում, որ առաջին, այսօր արդեն ամենաքաղցր ուրախությունը կիսեր հարազատների հետ, Կիլիկիայի իրենց հայրենական տանը: Երևանյան մրցումներից առաջ հայրիկը համբուրում էր Ահդային, և վախը, կաշկանդվածությունը, ձեռքի դողը անմիջապես անցնում էին: Հայրը ասես լրացնում էր խորհրդատու հոգեբանի պակասությունը: Մեծ թենիսում ավելի հաճախ պարտությունները լինում են հոգեբանական բնույթի: Տարիներ առաջ Հայաստանի բաց առաջնության եզրափակիչում նման մի պարտություն կրեց Ահդան: Որքան անհամբեր է դառնում մարզիկը, երբ հաղթելիս է լինում: Թվում է, թե վերջ, պահն է հաղթության, բայց պահը ձգվում է, ձգվում, հոգևոր մի հանկարծահաս թուլություն է սկսվում և, ինչպես ընդունված է ասել, մարզական բախտը երես է թեքում քեզանից: 3:0 հաշվով հաղթում է Ահդան: Ընդամենը մի պահ նայեց մարզչին և ժպտաց: Հենց այս պահից էլ խախտվեց մինչև հաղթանակը վախճան պայքարելու սկզբունքը և սկսվեց հոգեբանական պարտությունը: Նրան մնաց մինչև ժպտալը ձեռ բերած 3 միավորը և 3:6 հաշվով պարտությունը «ճաշակելու» տհաճ զգացումը: Նման թրվացյալ հաղթանակներ բոլոր մարզիկները էլ ունենում են ցանկալի հաղթանակին հասնելու ճանապարհին, թեև լինում են պարտություններ, որ համազոր են հաղթանակի: Կարող ես գրավիչ, տեխնիկապես բարձր խաղ ցուցադրել, բայց պարտություն կրել: Սպորտը թերևս դրանով է սիրելի: Ահդա Խալաթյանի մարզական կյանքը հարուստ է նաև անակնկալներով, անմոռանալի պահերով, որոնք նա մի առանձնահատուկ սիրով է պահում իր հիշողության մեջ: Մալայզիայի միջազգային մրցախաղի ժամանակ էր: Ուղղակի անտանելի շոգ էր, հեղձուկ. սառցաջրով անընդհատ թրջում էր ոտքերը: Անսովոր էր նման բարձր ջերմաստիճանի պայմաններում խաղ անցկացնել: Հանդիսատեսների թվում էին նաև վիթխարի ծառերի վրա ճյուղից-ճյուղ թռչկոտող կապիկները: Ահդան առաջին անգամ էր տեսնում այդպիսի ազատություն վայելող կապիկների: Անկախ իրենից պահ էր փնտրում կապիկների կողմը նայելու համար: Հանկարծ երկու կապիկ վազքով մտան դաշտ, վազեցին թռչող գնդակի հետևից: Մեկը բռնեց ու փախավ, մյուսը հասավ նրան ու փորձեց խլել, բայց առաջինն ավելի ճարպիկ գտնվեց: Մագլցեց ծառն ի վեր, հետո ճյուղից-ճյուղ թռչկոտելով անհետացավ: Իսկ կապիկները թենիս սիրո՞ւմ են,— երևի, մտածել էր նա: Գուցե... Մի գեղեցիկ հուշ է, որը մնացած բոլոր հուշերի հետ միասին այսօր պատմում է մեծ թենիսի վարպետ, ՍՍՀՄ հավաքականի անդամ Ահդա Խալաթյանը: Պատմում է սիրով, մի քիչ տրխուր, մի քիչ ուրախ:

Մեր հանդիպումը Ահդայի հետ կարճ տևեց, որովհետև պարապմունքից ուշանում էր: Որոշել էի զրույցի վերջում հարցնել, թե ինչ կլիներ, ինչպես կդասավորվեր նրա կյանքը, եթե հայրական տունը Կիլիկիա թաղամասում չլիներ և «Հրազդան» մարզադաշտի մոտ չբացվեր թենիսի դպրոցը: Ի՞նչ կաներ այն ժամանակ 4-րդ դասարանի աշակերտուհի Ահդա Խալաթյանը:

— Կսովորեի, կմեծանայի գուցե քննիչ կամ դերասան էլ դառնայի, բայց առանց այս վեհանձն, գեղեցիկ ասպետական խաղի, երևի թե, շատ տխուր կլինեի...

## ՓԱԿ ԵՎ ԲԱՑ ԱՆՈԹՆԵՐՈՒՄ ԵՌԱՑՈՂ ՋՈՒՐԸ

Երկու միատեսակ անոթների մեջ ծորակից միևնույն քանակությամբ ջուր լցրեք և դրեք միևնույն հզորությամբ երկու միատեսակ ջեռուցիչների վրա: Անոթներից մեկի բերանը փակեք մետաղյա կափարիչով, իսկ մյուսը բաց թողեք: Մի որոշ ժամանակամիջոցից հետո դուք կնկատեք, որ փակ անոթում գտնվող ջուրը ավելի շուտ է սկըսում եռալ, քան բաց անոթում եղածը:

Բաց անոթից ջերմային էներգիայի կորուստը կատարվում է ոչ միայն ջերմահաղորդականության, կոնվեկցիայի և ճառագայթման միջոցով, այլև ջրի գոլորշացման հետևանքով: Ջրի յուրաքանչյուր գրամի գոլորշացման համար անհրաժեշտ է 2300 ջոուլից ավելի ջերմություն: Դա նշանակում է, որ ջրի գոլորշացման վրա ծախսվում է ըզգալի քանակությամբ ջերմային էներգիա: Եթե ամանը բաց է, ապա գոլորշին հեռանում է անոթից՝ իր հետ տանելով այդ էներգիան, իսկ երբ փակ է, ապա ջերմային էներգիայի այդ մասը մնում է անոթում: Ահա թե ինչու փակ անոթում ջուրը ավելի շուտ է եռում, քան՝ բացում:

## ՀՆԱՐԱՎՈ՞Ր Է ԱՐԴՅՈՔ ՋՐՈՎ ԿԱՆԽԵԼ ԲԱՆՋԱՐԵՂԵՆԻ ՑՐՏԱՀԱՐՈՒՄԸ

Ձմռանը որոշ տնտեսուհիներ նկուղում եղած բանջարեղենը ցրտահարությունից պաշտպանելու համար այնտեղ մեծ ամանով ջուր են դնում: Ճի՞շտ են արդյոք վարվում նրանք: Հընարավո՞ր է արդյոք ջրով կանխել բանջարեղենի ցրտահարումը:

Ծորակի կամ աղբյուրի ջուրը, սովորաբար, ունենում է 8 աստիճանից մինչև 10 աստիճան ջերմաստիճան: Դժվար չէ հաշվել, որ այդպիսի սկըզբնական ջերմաստիճան ունեցող մեկ գրամ ջուրը մինչև սառչելը և լրիվ բյուրեղանալը անջատում է մոտ 90 կալորիա կամ 378 ջոուլ ջերմություն: Ընդ որում՝ այդ ջերմության մեծ մասը՝ 70 տոկոսը անջատվում է ջրի բյուրեղացման պրոցեսում: Մեծ ամանի մեջ լցված ջուրը ջերմության մի յուրահատուկ շտեմարան է, որը մինչև լրիվ սառչելը անընդհատ ջերմություն է արձակում, ինչը և կանխում է նկուղում եղած բանջարեղենի ցրտահարումը:

## ՎԱՌՎՈՂ ԹԱՇԿԻՆԱԿԸ

Թաշկինակը նախօրոք լավ թրջեք ջրով, ապա սպիրտով և այրեք: Բոցը հանգելուց հետո դուք նկատում եք, որ հանգչելուց հետո դուք նկատում եք, որ յո՛, թաշկինակը ձեր աչքի առաջ բոցավառվելուց հետո մնում է անվնաս: Ո՞րն է գաղտնիքը:

Իրականում բոցավառվում է թաշկինակի արտաքին մակերևույթի վրա գտնվող սպիրտը և ոչ թաշկինակը, որը նախօրոք լավ թրջված է եղել ջրով: Իսկ սպիրտի այրման ժամանակ ըստացված ջերմությունը ծախսվում է թաշկինակի մեջ պարունակող ջրի տաքացման և գոլորշացման վրա, այդ պատճառով թաշկինակի ջերմաստիճանը չի հասնում բոցավառման ջերմաստիճանին և այն մնում է անվնաս:

## ԱՐՏԵՐՈՒՄ ԵՎ ԴԱՇՏԵՐՈՒՄ ԱՃՈՂ ՔԱՐԵՐԸ

Ով մի քանի տարի անընդհատ և կանոնավոր կերպով մշակել է իր հողամասը, նա ամեն տարի գարնանը ստիպված է եղել այնտեղից մեծ քանակությամբ քար հավաքել: Որտեղի՞ց են հայտնվում քարերը: Երկնաքարերը, որոնք բոլորովին այլ բաղադրություն ունեն, Երկրի մակերևույթ են հասնում

միայն հազվագյուտ դեպքերում: Մնում է ենթադրել, որ քարերը «աճում» և Երկրի մակերևույթ են բարձրանում գետնի տակից: Ինչպե՞ս է դա տեղի ունենում:

Քարերը գետնի տակից վեր են բարձրանում հողի հաջորդաբար սառչելու ու հալվելու պրոցեսների հետևանքով, որոնք տեղի են ունենում ուշ աշնանը, ձմռանը և վաղ գարնանը: Երբ գետինը սառչում է, հողի մեջ սառույցի սահմանը աստիճանաբար իջնում է, այդ ժամանակ հողի միջից ջրային գոլորշին դիֆուզվում է դեպի վեր, դեպի սառույցի սահմանը: Երբ սառեցման սահմանում քար է լինում, իջնում է ավելի արագ, քան հողում, քանի որ քարը ջերմության ավելի լավ հաղորդիչ է, քան հողը: Այդ պատճառով քարի ստորին մասն ավելի շուտ է սառչում, քան նրա շրջապատի հողը: Քարի տակ ջուրը սառչում է, և գոյացած սառույցի ընդարձակման հետևանքով քարը բարձրանում է դեպի վեր: Երբ սառած գետինը հալվում է, քարի տակ հող է լցվում, և նրա նոր, համեմատաբար բարձր դիրքը ամրապնդվում է: Շատ տարիների ընթացքում հողի սառչելու և հալվելու իրար հաջորդող պրոցեսները ի վերջո գետնի տակից քարերը բարձրացնում են վեր՝ երկրի մակերևույթ:

**ԳԱՐՈՒՇ ՊԵՏՐՈՍՅԱՆ**


# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 1. 89




*Հանձնված է արտադրության 30.08.88 թ.: Ստորագրված է տպագրության 26.11.88 թ.: Թուղթ օֆսեթ, $70\times100^{1}/_{61}$: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,292 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66232: Պատվեր՝ 1551: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 30.08.88 г. Подписано к печати 26.11.88 г. Формат $70\times100^{1}/_{16}$. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 66232. Заказ 1551. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.


Շապիկի առաջին էջին՝ ՄԻՆԱՍ ԱՎԵՏԻՍՅԱՆ. «ՍԱՓՈՐՈՎ ԱՂՋԻԿԸ»




ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆ (ՍՍՀՄ ժող. նկարիչ)

Յուրաքանչյուր ազգի ներկայացուցիչ դառնում է օրինական տերը դարերի խորքից բերված իր ժողովրդի ժառանգության, որի մեջ կան նաև երազանքներ ու չլուծված խնդիրներ: Վաղ հասակից որդեգրվել ու նվիրվել այդ գործերին՝ նշանակում է լինել հայրենասեր, լինել քաղաքացի: 1988 թվականը բոլորի համար եղավ հայրենասիրության մեծ քննության տարի: Դպրոցականները իրենց դրսևորեցին ինչպես համընդհանուր ոգու անբաժանելի մաս: Կցանկանայի, որ այսուհետ այդ ոգին ուղենիշ դառնա ձեր ողջ կյանքում, որ դուք, սիրելի դպրոցականներ, 1989 թվին է՛լ ավելի զինվեք գիտելիքներով, է՛լ ավելի խոր ու իմաստավորված լինի ձեր սերը հայրենիքի հանդեպ, և իրագործվեն մեր բոլորիս երազանքները: Թող խաղաղություն և երգ բերի Նոր տարին բոլորիս:

ՍՈԿՐԱՏ ԽԱՆՅԱՆ (Ստեփանակերտի ինստիտուտի հայոց լեզվի և գրականության ամբիոնի վարիչ).—

Մայր Հայաստանի և նրա սահմաններից դուրս ապրող հայ երեխաները թող իմանան, որ Արցախ աշխարհի իրենց հասակակիցները ևս ապրում են մեկ հույսով՝ տեսնել Արցախը իր հարազատ մոր՝ հայ ժողովրդի հույս ու հավատ, լույսի հանգրվան Հայաստանի գրկում:

Արցախի հազարավոր դպրոցականների անունից ողջունում եմ հինավուրց Նաիրի երկրի երեխաներին և ընդգծում, որ ազգի դիմագիծը նրա լեզուն է: Լեզուն ժողովրդի պատմությունն է, նրա ներկան ու ապագան:

Անաղարտ պահենք մեր լեզուն, թող այն ծիածանվի դարեդար, դառնա ներկան ապագային կամրջող մեր անունն ու պատիվը:

ՏԻԳՐԱՆ ՄԱՆՍՈՒՐՅԱՆ (կոմպոզիտոր).—

Շնորհավորում եմ բոլորիդ Նոր տարին, ուզում եմ, որ առողջ լինեք, ավելի կազմակերպված, քան անցած տարիներին, քան երբևիցե: Ուզում եմ, որ առավել նման լինեք մեր ժողովրդի մեծ զավակներին և, ուշադրությունից դուրս չընթողնելով կյանքի մանրուքները, առավելապես ապրեք բոլորիս արժանի, այսօրվա ծրագրերով: Այս ցանկությունները երիցս ասվել են ձեզ, գիտեմ, բայց հիմա այն իմաստը չէին ունենա, այն հրամայականով չէին առաջնորդվի, եթե չլիներ մեր հասարակական կյանքի այսօրվա լարվածությունը: Մի խնդրանք. մշտապես, ամենից վեր ու բորբոքուն պահեք մայրենին՝ սերը առ հայոց լեզու:

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ (արձակագիր)

Մաղթենք, որ խաղաղավետ ու աներկրաշարժ լինի այս Ամանորը և մարդը ցնցվի բարի խոսքի առատությունից: Բարի խոսքով սկսենք Նոր տարին, որպեսզի բոլոր շարունակությունները բարի լինեն:

Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ԾԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵԶՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱԹԱԲԵԿՅԱՆ Ն.

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806